ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

3

ՄԱՐՏ

ԵՐԵՎԱՆ • 1975

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակություններից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**3** ՄԱՐՏ 1975

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն քննարկեց «Տամբովի մարզային կուսակցական կազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության վիճակի մասին» հարցը:**

*Ընդունված որոշման մեջ նշվում է, որ Տամբովի մարզային կուսակցական կազմակերպությունը, իրագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումները, որոշակի աշխատանք է կատարել տնտեսական և կուլտուրական շինարարության, աշխատավորների կոմունիստական դաստիարակության ղեկավարումը բարելավելու ասպարեզում: Սակայն ձեռք բերված արդյունքներն զգալիորեն ավելի բարձր կարող էին լինել, եթե ՍՄԿԿ մարզկոմը, քաղկոմներն ու շրջկոմները եղած թերությունները վերացնելու, հանձնարարված գործի համար կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով ավելի լրիվ օգտագործեին քննադատության և ինքնաքննադատության՝ կուսակցության գործունեության փորձված մեթոդը:*

*Մարզի արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը շատ ավելի դանդաղ են զարգանում, քան նախատեսված է հնգամյա պլանով: Ամեն տարի ձախողվում է կապիտալ շինարարության ծրագիրը, թույլ են օգտագործվում արտադրության արդյունավետության բարձրացման ռեզերվները: Դեռևս մեծ են անտնտեսվարության, կադրերի հոսունության, աշխատանքային կարգապահության խախտումների, սոցիալիստական սեփականության հափշտակումների հետ կապված կորուստները: Այդ և այլ թերություններ հաճախ չեն ստանում օբյեկտիվ գնահատական, սկզբունքային քննադատության չեն ենթարկվում կուսակցական մարմիններում և սկզբնական կուսկազմակերպություններում:*

*ՍՄԿԿ մարզկոմը չի տալիս իր աշխատանքի և իրավիճակի ինքնաքննադատական վերլուծման օրինակ, այդ բանը անբավարար է ուսուցանում կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին, սկզբնական կուսկազմակերպություններին: Պատշաճ պահանջկոտություն չի ցուցաբերվում այն կադրերի նկատմամբ, որոնք չեն ապահովում ժողովրդատնտեսական պլանների և առաջադրանքների կատարումը: Լիբերալ վերաբերմունք է ցուցաբերվում կուսակցական և պետական կարգապահությունը խախտող, պաշտոնական դիրքը չարաշահող աշխատողների նկատմամբ: Կուսակցական շատ կոմիտեներ, կենդանի կազմակերպչական աշխատանքի փոխարեն, հիմնական ջանքերը կենտրոնացնում են բազմաթիվ որոշումներ նախապատրաստելու և ընդունելու, նիստեր ու խորհրդակցություններ անցկացնելու վրա: Պլենումներում և կուսակցական ժողովներում տրվող զեկուցումների մեջ ուշադրությունը կենտրոնացվում է գործունեության դրական կողմերի վրա, քննադատությունը, որպես կանոն, դիմազուրկ է, հանգում է անբավարար ցուցանիշների թվարկման, չի բացահայտում կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների և կոնկրետ անձանց գործելակերպի վրիպումները: Դա անդրադառնում է նաև ելույթների բնույթի վրա, որոնք մի շարք դեպքերում դուրս չեն գալիս հաշվ-*

ղությունների վերաբերյալ ինքնահաշվետվությունների և զեկույցների շրջանակներից:

Վատ է զարգանում ներքևից եկող քննադատությունը: Վերջին տարիներին մարզկոմի, Ինժավինոյի, Ումետի, Ժերդյովկայի շրջկոմների պլենումներում ըստ էության քննադատություն չի եղել նրանց բյուրոների, քարտուղարների, բաժինների հասցեին, չնայած աշխատանքում գոյություն ունեցող թերությունների: Կոմունիստների ակտիվությունը հաճախ նվազում է այն բանի հետևանքով, որ կուսակցական կոմիտեները նրանց վատ են տեղեկացնում իրենց գործունեության մասին, թույլ են տալիս ավելորդ կանոնարկում՝ պլենումների, կուսակցական ժողովների անցկացման գործում: Քիչ է ուշադրություն նվիրվում քննադատության և ինքնաքննադատության զարգացմանն աշխատանքային կոլեկտիվներում, արհմիութենական, կոմերիտական և բանվորական ժողովներում, մշտապես գործող արտադրական խորհրդակցություններում:

Կուսակցական մարմինները բավարար սրությամբ չեն արձագանքում քննադատության նկատմամբ ոչ ճիշտ վերաբերմունքի փաստերին: Որոշ աշխատողներ, խոսքով համաձայնելով դիտողություններին, ոչինչ չեն անում թերությունները շտկելու համար: Տամբովի, Միչուրինսկի քաղաքային, Կիրսանովի շրջանային կուսկազմակերպություններում եղել են քննադատությունը ճնշելու, քննադատական ելույթների համար հալածելու դեպքեր, սակայն դրանում մեղավոր անձինք ժամանակին պատասխանատվության չեն ենթարկվել:

Մարզային «Տամբովսկայա պրավդա» թերթում, քաղաքային և շրջանային թերթերում հազվադեպ են հրապարակվում քննադատական հոդվածներ, թղթակցություններ, աշխատավորների նամակներ՝ արտադրության զարգացման, մարդկանց դաստիարակության, կուսակցական կազմակերպությունների, ղեկավար կադրերի գործունեության հարցերի վերաբերյալ: Շատ հրապարակումներում չկան բավարար կոնկրետություն և համոզիչ փաստարկում: Կուսակցական կոմիտեները քիչ են հոգ տանում մամուլի ելույթների ներգործության մասին, հաճախ չեն արձագանքում թերթերում հրապարակվող քննադատական նյութերին:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ՍՄԿԿ Տամբովի մարզկոմին, քաղկոմներին ու շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին պարտավորեցրեց վերացնել նշված թերությունները, ապահովել քննադատության ու ինքնաքննադատության ըստ ամենայնի զարգացնելու մասին ՍՄԿԿ XXIV համագումարի ցուցումների և ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կատարումը:

ՍՄԿԿ Կենտկոմն ընդգծեց, որ արդի պայմաններում, կոմունիստական շինարարության լուծվող խնդիրների մասշտաբների աճի և դրանց բարդության, տնտեսավարման ինտենսիվ մեթոդների անցնելու, գործունեության բոլոր ոլորտներում դեպի որակական ցուցանիշները կատարվող շրջադարձի կապակցությամբ, քննադատությունն ու ինքնաքննադատությունը ավելի ու ավելի մեծ նշանակություն են ստանում որպես կազմակերպչական ու գաղափարադաստիարակչական աշխատանքի մակարդակը բարձրացնելու միջոց: Ինչպես մեր նվաճումների, այնպես էլ եղած պրոբլեմների, թերությունների հանգամանալի և ինքնաքննադատական վերլուծությունը,— նշում է ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— հետագա առաջընթացի անհրաժեշտ նախադրյալն է: Սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության լայն զարգացումը կուսակցական կազմակերպության քաղաքական առողջության, կուսակցության և ժողովրդի հանդեպ ունեցած իր պարտքի ճիշտ ըմբռնման վկայությունն է:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված է, որ քննադատությունն ու ինքնաքննադատությունը պետք է նպաստեն՝ մարզի կոմունիստներին, բոլոր աշխատավորներին մոբիլիզացնելու կուսակցության համագումարների և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումների իրականացման, պետական պլանների կատարման ու գերակատարման, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու ռեզերվների հայտնաբերման և էլ ավելի լրիվ օգտագործման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման համար, զարգացնելու



մասսաների ակտիվությունն ավելի լավորակ և պակաս ծախսումներով արտադրանքի թողարկումն ավելացնելու համար ծավալված մրցության մեջ: Հարկավոր է քննադատաբար վերլուծել յուրաքանչյուր ետ մնացող ձեռնարկության, կառույցի, կոլտնտեսության և սովխոզի իրավիճակը, նախատեսել և իրագործել կոնկրետ միջոցառումներ, որոնք ապահովեն պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարումը նրանց կողմից: Արագացնել նոր կարողությունների գործարկումն ու յուրացումը հատկապես քիմիական, թեթև և սննդի արդյունաբերության մեջ: Հասնել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի աճի արագ տեմպերի, վերացնել շաքարի ճակնդեղի, արևածաղկի, կարտոֆիլի, բանջարեղենի արտադրության և մթերումների գործում ետ մնալը, ավելի հաստատակամ աշխատանք կատարել հողագործության և անասնապահության մասնագիտացումը խորացնելու ասպարեզում: Վերացնել բնակարանային շինարարության և բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման գործում եղած լուրջ թերությունները:

ՍՄԿԿ Տամբովի մարզկոմին, քաղկոմներին և շրջկոմներին առաջարկված է ավելի լրիվ օգտագործել քննադատության և ինքնաքննադատության մեթոդը կադրերի դաստիարակության գործում, մարդկանց նկատմամբ վստահությունն ու հարգանքը օրգանապես զուգորդել հանձնարարված գործի, կուսակցական և պետական կարգապահության կիրառման համար նրանց նկատմամբ ցուցաբերվող սկզբունքային պահանջկոտության հետ: Վճռականորեն հանդես գալ պլանային առաջադրանքների թերակատարումը և կազմակերպչական ու դաստիարակչական գործունեության մեջ իրենց թույլ տված վրիպումներն օբյեկտիվ պատճառներով քողարկելու՝ որոշ ղեկավարների ձգտման դեմ: Բոլոր աշխատողների մեջ դաստիարակել բարոյական վեհ հատկություններ, սոցիալիստական ձեռներեցություն, անհաշտություն լճացման և անշարժության նկատմամբ: Հարկավոր է քննադատել ոչ միայն նրանց, ովքեր սխալներ են անում, այլև նրանց, ովքեր բոլոր հնարավորությունները չեն օգտագործում արտադրությունը զարգացնելու համար, չեն ցուցաբերում նախաձեռնություն:

Կարևոր է, որ քննադատության նկատմամբ ճիշտ վերաբերմունքի օրինակը լինի ղեկավարներից: Հենց նրանցից է ամենից առաջ կախված հարցադրման սկզբունքայնությունը, ներքևից եկող անկեղծ քննադատության պայմանների ստեղծումը, ելույթների առթիվ ձեռնարկվող միջոցների արդյունավետությունը:

Ղեկավարվելով կուսակցական կյանքի լենինյան նորմերով, ՍՄԿԿ մարզկոմը, քաղկոմներն ու շրջկոմները պարտավոր են ապահովել բոլոր կոմունիստների ակտիվ մասնակցությունը կուսակցական որոշումների քննարկմանը, մշակմանն ու իրականացմանը: Բարելավել կուսակցության անդամներին կուսկոմիտեների գործունեության մասին ինֆորմացիա տալու գործը: Մշտապես հոգ տանել, որ պլենումները, կուսակցական ժողովներն անցնեն գործարար կերպով, միմյանց նկատմամբ և ընտրովի կուսակցական մարմինների նկատմամբ կոմունիստների բարձր պահանջկոտության մթնոլորտում, քննարկման դրվեն առավել հրատապ հարցերը: Տամբովի մարզկոմի, կուսակցության շատ քաղկոմների ու շրջկոմների պլենումներում տրվող զեկուցումները պետք է լինեն առավել սկզբունքային և ինքնաքննադատական:

Քննադատության ներգործությունը բարձրացնելու նպատակով առաջարկված է խիստ վերահսկողություն սահմանել թերությունները և բացասական երևույթները ծնող պատճառները ժամանակին վերացնելու նկատմամբ: Վճռականորեն խափանել քննադատությունը ճնշելու դեպքերը, ուղղել, իսկ եթե պահանջվում է, ընդհուպ մինչև պոստերից վտարելը պատժել այն աշխատողներին, որոնք ճիշտ վերաբերմունք ցույց չեն տալիս քննադատությանը, իրենց հասցեին արված արդարացի դիտողություններն ընդունում են որպես իրենց հեղինակության խախտում, անձնական ինքնասիրությունը հասարակական շահերից բարձր են դասում, վրեժ են լուծում իրենց քննադատած ընկերներից: Միևնույն ժամանակ չի կարելի թույլ տալ, որ քննադատությունը փոխարինվի դեմագոգիայով և զրպարտությամբ: Հարկավոր է, որ քննադատությունը, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, լինի «ընկերական, ուղղամիտ, դիվանագիտությունից

*ու մանր հաշիվներից զերծ»։ Նրա արժեքավորությունը որոշվում է ոչ թե արտահայտությունների խստությամբ, այլ ճշմարտացիությամբ, ապացույցի ուժով, բարձրացված հարցերի հասարակական նշանակությամբ։*

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ՍՄԿԿ մարզկոմից, քաղկոմներից և շրջկոմներից, սկզբնական կուսկազմակերպություններից պահանջեց մշտապես կատարելագործել իրենց գործունեության ոճն ու մեթոդները, այնպես անել, որ ամենուրեք տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարման մեջ հաստատվի իսկական կուսակցական մոտեցում, կուսակցական ոճ։ Սկզբունքային քննադատության ենթարկել այն ամենը, ինչ խանգարում է դրանց՝ բյուրոկրատիզմը, քաշքշուկը, տեղայնությունը, աշխատանքի հնացած եղանակներին ու մեթոդներին կառչելու սովորույթը։ Հատուկ ուշադրություն դարձնել, որ կուսակցության և կառավարության դիրեկտիվների, սեփական որոշումների կատարման ստուգումը լինի ներգործուն, կրի սիստեմատիկ բնույթ։*

*Միջոցներ ձեռնարկել է՛լ ավելի զարգացնելու քննադատությունն ու ինքնաքննադատությունը մարզի սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններում։ Սիստեմատիկաբար ամրապնդել կապերը մասսաների հետ և ուսումնասիրել մարդկանց պահանջմունքներն ու տրամադրությունները, ապահովել բոլոր ղեկավարների ուշադիր վերաբերմունքը աշխատավորների դիմումների և նամակների նկատմամբ։*

*ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական կոմիտեներին պարտավորեցրեց մշտապես հոգ տանել քննադատության և ինքնաքննադատության զարգացման գործում մամուլի, մասսայական ինֆորմացիայի մյուս միջոցների դերը բարձրացնելու մասին։ Պրոպագանդելով առաջավոր փորձը, մարզային, քաղաքային և շրջանային թերթերը պետք է ավելի խոր կերպով բացահայտեն աշխատանքում եղած թերությունները, վերլուծեն դրանց պատճառները, հասնեն այն բանին, որ քննադատական նյութերն աչքի ընկնեն հրատապությամբ, գործիմացությամբ, հետևությունների սկզբունքայնությամբ։ Բանվորական և գյուղական թղթակիցներին ավելի ակտիվորեն ներգրավել մամուլում մարզի կյանքի հրատապ հարցերի քննարկմանը։ Ավելի սուր կերպով արձագանքել մամուլի ահազանգերի նկատմամբ առանձին աշխատողների խուսափողությունների և արհամարհական վերաբերմունքի փաստերին։*

# ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀՈՒՍԱԼԻ ԳՐԱՎԱԿԱՆԸ

ՄԵՐ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԲՈԼՈՐ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ խորին գոհունակությամբ ընդունեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումի նյութերն ու որոշումները։ Միահամուռ հավանությունը մարմնավորվեց բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականության աշխատանքային ու քաղաքական նոր վերելքում, հնգամյակի եզրափակիչ տարին ժամկետից շուտ և հաջողությամբ ավարտելու վճռականության մեջ։

Արդեն ավարտին է մոտենում առաջին եռամսյակը։ Նախնական արդյունքները խոստումնալից են։ Հունվար և փետրվար ամիսների պլանները գերակատարված են թե՛ արտադրանքի իրացման և թե՛ ծավալի ցուցանիշներով։

Հարկ է նշել, որ մեր բոլոր հաջողությունների հիմքերի հիմքը եղել և մնում է հարազատ կուսակցության շուրջը հանրապետության աշխատավորության կուռ համախմբվածությունը, կամքի ու եռանդի այն միաձույլ դրսևորումը, որով տոգորված է կոմունիստական շինարարության մեր առօրյան։

Այդ միասնության ամրապնդումը, կուսակցության շուրջը մեր աշխատավորության առավել սերտ համախմբումն է, թերևս, Կենտկոմի հունվարյան պլենումի գլխավոր քաղաքական նշանակությունը։ Դժվար է գերագնահատել «ՍՄԿԿ Կենտկոմի 1974 թվականի դեկտեմբերյան պլենումի արդյունքների և հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրների մասին» Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Դեմիրճյանի զեկուցման, պլենումի որոշման մեջ պարունակվող եզրահանգումների ու գնահատականների գործնական նշանակությունը հանրապետության կուսակցական կազմակերպության կյանքում։ Դրանցում օբյեկտիվորեն ցույց տրվեցին ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների իրականացման գործում հանրապետության էական հաջողությունները և, նույնպես օբյեկտիվորեն, վերլուծվեցին այն թերությունները, որոնք բացասաբար են անդրադարձել մեր հաջողությունների մակարդակի վրա։ Հանրապետության կյանքի բոլոր ոլորտներում գործերի վիճակի ինքնաքննադատական վերլուծությամբ պլենումը սկզբունքորեն բացահայտեց թերությունների արմատները և դրանք ծնող պատճառները։ Ամենայն հստակությամբ նշվեցին թերությունների վերացման և դրական աշխատանքի կազմակերպման առաջիկա և հեռանկարային ուղիները։

Բոլոր կուսակցական կոմիտեների և սկզբնական կազմակերպությունների, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական մարմինների, բանավոր ու գրավոր պրոպագանդայի միջոցների առաջնահերթ խնդիրն է՝ **Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումներն ու եզրահանգումները պարզաբանել ժողովրդի լայն զանգվածներին, յուրաքանչյուր աշխատավոր մարդու, դրանք դարձնել գործնական աշխատանքի ծրագիր, զուգահեռաբար ամրապնդել ու զարգացնել եզրափակիչ տարվա առաջին ամիսների աշխատանքային վերելքը, առավել լայնորեն ծավալել համաժողովրդական սոցիալիստական մրցությունը, հասնել այն բանին, որ հնգամյա պլանի կատարման ու գերակատարման պայքարը դառնա յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր աշխատավորի ներքին, անձնական խոր պահանջմունքը։**

ԻՆՉՊԵՍ ՆՇԵՑ ՀՈՒՆՎԱՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԸ, մեր կյանքում տեղ գտած թերությունների հիմնական պատճառներից մեկն այն էր, որ հնգամյակի տրն

սության բնագավառում փորձեր են արվում գեղարվեստը բացատրելու որպես սուբյեկտի անհատական ապրումների չգիտակցված արտահայտություն, որը ոչ մի կապ չունի օբյեկտիվ աշխարհի հետ ու չի կարող այն ճանաչելու հավակնություն ունենալ:

Կուսակցությունը միշտ հանդես է եկել մանրախնդիր խնամակալության ու վարչարարության դեմ՝ ստեղծագործության բնագավառում: Գաղափարի գեղարվեստական մարմնավորման ձևերը, ստեղծագործական ոճերը կարող են և պետք է բազմազան լինեն: **Բայց ելակետը և սկզբունքային դիրքորոշումը պետք է մեկը լինի: Այդ դիրքորոշումը մարմնավորվում է սոցիալիստական ռեալիզմի մեթոդի մեջ, խարսխվում մեր գրականության և արվեստի կուսակցականության, դասակարգայնության ու ժողովրդայնության անսասան սկզբունքների վրա:**

Լուրջ թերություններ կան թատերական և կինոարվեստի, համերգային գործունեության բնագավառներում: Խոսքը վերաբերում է հատկապես խաղացանկին, որը դանդաղ է հարստանում ժամանակակից կյանքն արտացոլող բարձրարժեք գեղարվեստական ստեղծագործություններով:

Հասարակական գիտության շատ օղակներում դեռևս անբավարար են մշակվում մեր երկրում սոցիալիստական հարաբերությունների զարգացման և հանրապետության սոցիալական առաջընթացի պրոբլեմները, զարգացած սոցիալիստական հասարակարգի և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման արդի փուլի տնտեսական հարցերը, սոցիալիստական ազգերի զարգացման պրոբլեմները, սովետական ժողովրդի՝ որպես պատմական նոր հանրության կազմավորման, սովետական սոցիալիստական ապրելակերպի տեսական պրոբլեմները:

Կուսակցական կազմակերպությունները պետք է մշտապես հոգան, որ հասարակական գիտության ոչ մի օղախում տեղ չգտնեն նույնիսկ առանձին շեղումներ պատմական անցյալի և հասարակական երևույթների գնահատման գիտական, կուսակցական դասակարգային դիրքերից, մեթոդաբանական սխալներ, կեղծ գիտական օբյեկտիվիզմի դրսևորումներ:

Կուսակցական և կոմերիտական բոլոր մարմինների, գաղափարախոսական ճակատի, մամուլի բոլոր աշխատողների խնդիրն է՝ առավել սկզբունքայնություն և հաստատակամություն ցուցաբերել գաղափարական անտարբերության և քաղաքական կարճատեսության դրսևորումների, քաղաքական զգոնության բթացման փաստերի դեմ մղվող պայքարում, հետևողականորեն ու գիտական խորությամբ մերկացնել բուրժուական գաղափարախոսությունը:

Հանրապետության հասարակական կյանքի բոլոր ոլորտներում **անհրաժեշտ է ավելի ուժեղացնել աշխատավորության ու մատաղ սերնդի դաստիարակությունը մարքս-լենինյան աշխարհայացքի, սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությանն անվարան նվիրվածության ոգով:** Այդ նպատակի համար պետք է լայնորեն օգտագործել ֆաշիզմի ջախջախման 30-ամյակի առաջիկա համաժողովրդական տոնակատարությունը, սովետական ժողովրդի հեղափոխական, աշխատանքային ու մարտական փառապանծ ավանդույթները:

Մենք պետք է ակտիվ հարձակողական պայքար մղենք սոցիալիստական ինտերնացիոնալիզմի բոլոր հակոտնյաների, հատկապես այնպիսի երևույթների դեմ, ինչպիսիք են՝ ազգային սահմանափակությունը, ազգային բացառիկությունը և պարծենկոտությունը, որ օրգանապես խորթ են ու նողկալի իր բազմադարյան փորձով ու սոցիալիստական ներկայով իմաստնացած հայ ժողովրդի էությանը:

Հայ, ինչպես և սովետական մյուս ժողովուրդներին հատուկ է սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի վեհ ու գեղեցիկ զգացմունքը: Նա բարեկամության անխզելի թելերով է կապված մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների հետ, անխառն սիրո ու հարգանքի ազնիվ զգացումներ է տածում ռուս մեծ ժողովրդի նկատմամբ, որը բախտորոշ դեր է խաղացել նրա ճակատագրում՝ թե՛ դարերի հոլովույթում, թե՛ մեր օրերում:



Հայ աշխատավոր մարդը, ինչպես միշտ, աչքի լույսի պես պահպանում է նվիրական այդ բարեկամությունը:

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒՆՎԱՐՅԱՆ պլենումի աշխատանքն ամբողջապես տոգորված էր մեր մարդկանց գործունեության մեջ, կյանքում ու կենցաղում տեղ գտած բարոյական առանձին խաթարումների դեմ անհաշտ պայքար կազմակերպելու ոգով: Անհնարին անկարելի է արմատական բեկում մտցնել մեր բոլոր գործերում, առանց ուժեղացնելու պայքարը հանուն սոցիալիստական ապրելակերպի, հանուն նոր հասարակարգ կառուցող մարդու բարոյական անաղարտության:

Սովետական, սոցիալիստական ապրելակերպը հատկանշվում է սոցիալական խոր լավատեսությամբ, որը խարսխվում է սոցիալիզմի սոցիալ-տնտեսական կարևորագույն նվաճումների վրա: Իրո՛ք մարդկային, մարդասիրական, կոլեկտիվիստական հարաբերությունները, որոնք սովետական ապրելակերպի բնորոշ հատկանիշներն են, ծնունդ են առնում աշխատավորների շահերի ու նպատակների միասնությունից: Սովետական ապրելակերպը դրսևորվում է մարդկանց աշխատանքային խանդավառության, զանգվածների գիտակցական, աշխարհաշեն ստեղծագործության, արտադրության, պետության, հասարակության բոլոր գործերի կառավարմանը նրանց ակտիվ մասնակցության ոլորտներում: Դրանց արգասիքն են սովետական մարդկանց գաղափարական ու բարոյական վեհ ձգտումները, սեփական բարձր արժանապատվությունը և քաղաքացիական պարտականությունների գիտակցումը:

Բայց սովետական ապրելակերպը երկնքից ընկնող մանանա չէ: Այն կուսակցության գաղափարա-քաղաքական ամենօրյա գործունեության արդյունք է և ձևավորվում ու զարգանում է կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքների ոգով:

Ուստի, հունվարյան պլենումն ամենայն վճռականությամբ քննադատեց կուսակցության որոշ կոմիտեների անսկզբունքայնությունը, փափկամորթությունը, երկչոտությունը, որ հաճախ դրսևորվում են մեր կյանքում տեղ գտած ու սոցիալական չարիքի բնույթ կրող բացասական երևույթների դեմ մղվող պայքարում: Հենց անսկզբունքայնության և անհոգության հետևանքով է, մասամբ, որ որոշ բնագավառներում արմատներ են նետել սպառողական հոգեբանությունը, անձնական հարստացման տենչը, պետական ունեցվածքի հափշտակությունը, կաշառակերությունը, խույիգանությունը, սպեկուլյացիան և կոմունիստական բարոյականության այլ հակոտնյաներ, մարդկանց գիտակցության ու կենցաղի մեջ նկատվող ռեակցիոն վերապրուկներ:

Այդ երևույթները սոցիալական ոչ մի հիմք չունեն մեր հասարակության մեջ, թեպետ, դրանց առկայությունը բացատրվում է որոշակի պատճառներով: Առաջին հերթին, ինչպես նշեց հունվարյան պլենումը, անբավարար է կուսակցական կազմակերպությունների գաղափարական ու քաղաքական աշխատանքը մարդկանց բարոյական դաստիարակության ոլորտում: Այնուհետև՝ թույլ է եղել կուսակցական ու պետական կարգապահությունը, նվազել է պահանջկոտությունը կադրերի նկատմամբ: Ընդհանուր առմամբ հետևողական և, մանավանդ, անողոք չի եղել պայքարը նման երևույթների դեմ, դրանում ներգրավված չէին բոլոր կոմունիստները, հանրապետության աշխատավորները: Ղեկավար մարմինները պարբերաբար պայքարի կոչ էին անում, բայց պատշաճ հետևողականություն և սկզբունքայնություն հանդես չէր բերվում այն ինչպես հարկն է կազմակերպելու, կրակը հիմնական ուղղությունների վրա կենտրոնացնելու, աշխատավորական զանգվածների մասնակցությունն ապահովելու համար:

Պլենումը պահանջեց կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական, վարչական բոլոր մարմիններից՝ խստագույն պատասխանատվության ենթարկել բոլոր նրանց, ովքեր համապատասխան միջոցներ չեն ձեռնարկում տնտեսություններում հատակ հաշվառում և վերահսկողություն հաստատելու համար, ովքեր լիբերալիզմ, ներողամտություն և անսկզբունքայնություն են ցուցաբերում հանուն սոցիալիստական սեփականության պահպանման մղվող պայքարում:

## ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ԱՐՄԱՏԱՊԵՍ ԲԱՐԵԼԱՎԵՆՔ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

Գ. Ա. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ
Հայկական ՍՍՀ Մինիստրների
սովետի նախագահ

*Սովետական մարդիկ քաղաքական և աշխատանքային համաժողովրդական խանդավառության պայմաններում ավարտեցին իններորդ հնգամյակի որոշիչ տարին։ Այն նշանավորվեց ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների կատարման գործում կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի ձեռք բերած նոր նվաճումներով՝ սոցիալիստական էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման բոլոր հիմնական բնագավառներում վստահ առաջընթացով, աշխատավորների բարեկեցության անշեղ վերելքով։*

*Հնգամյակի անցած չորս տարիների գլխավոր քաղաքական արդյունքն այն է, որ ապահովվեց ողջ ժողովրդական տնտեսության դինամիկ զարգացումը, մեծ առաջընթաց քայլ կատարվեց կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում, ավելի ամրապնդվեց մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանունակությունը։ Անշեղորեն կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, մեր կուսակցությունն ու սովետական կառավարությունը հետևողականորեն վարում են խաղաղասիրական քաղաքականություն, որը համապատասխանում է մեր երկրի, սոցիալիստական համագործակցության բոլոր երկրների աշխատավորների, երկրագնդի բոլոր խաղաղասեր մարդկանց շահերին։ Սովետական երկիրը իններորդ հնգամյակի եզրափակիչ տարին թևակոխեց ավելի հարստացած, ավելի հզորացած։*

*ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, հանդես գալով կուսակցության Կենտկոմի դեկտեմբերյան (1974 թ.) պլենումում, ամփոփեց անցած չորս տարիներին կուսակցության ու ժողովրդի գործադրած ստեղծագործական ջանքերի, անձնվեր աշխատանքի արդյունքները, առաջադրեց ու վերլուծեց հնգամյակը հաջողությամբ ավարտելու հիմնական խնդիրները։*

*Սովետական Միության արդյունաբերական համախառն արտադրանքի անցյալ տարվա աճը, հնգամյակի նախորդ բոլոր տարիների համեմատությամբ, ամենաբարձրն է եղել։*

*1974 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, ՍՍՀՄ ազգային եկամուտն աճեց 5 տոկոսով, իսկ անցած չորս տարիներին այն ավելացավ 63 մլրդ ռուբլով, կամ աճեց 23,6 տոկոսով։ Հնգամյակի որոշիչ տարում նոր բնագծեր նվաճեցին երկրի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները։ Պլանով սահմանված 6,8 տոկոսի փոխարեն արդյունաբերական արտադրանքն աճեց 8 տոկոսով, պլանից ավելի թողարկվեց մոտ 7 մլրդ ռուբլու արտադրանք։ Մեծ աշխատանքներ կատարվեցին արտադրության մեջ նոր*



*տեխնիկայի արմատավորման, առաջավոր տեխնոլոգիայի յուրացման, արդյունաբերության կառուցվածքի կատարելագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման ասպարեզում։*

*Չնայած բնակլիմայական ծանր պայմաններին, գյուղի աշխատավորների հերոսական ջանքերի շնորհիվ Սովետական Միությունում հավաքվեց 195,5 մլն տոննա հացահատիկ, ստացվեց բամբակի ռեկորդային բերք, պլանից դուրս արտադրվեցին մեծ քանակությամբ անասնապահական մթերքներ։ Անցած չորս տարում գյուղատնտեսության համախառն արտադրանքն աճեց ավելի քան 15 տոկոսով։*

*1974 թվականին երկրում իրագործվեց կապիտալ շինարարության մի վիթխարի ծրագիր։ Ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին կապիտալ ներդրումները կազմեցին ավելի քան 105,7 մլրդ ռուբլի, որի իրացման շնորհիվ կառուցվեցին ու շահագործման հանձնվեցին հարյուրավոր նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, էներգետիկ նոր հզորություններ, ավտո և երկաթուղային մայրուղիներ, բնակարանային, կուլտուր-կենցաղային, առողջապահական բազմաթիվ օբյեկտներ։*

*Երկրի էկոնոմիկայի անշեղ վերելքին զուգահեռ հետևողականորեն իրագործվում է ՍՄԿԿ XXIV համագումարի հաստատած՝ ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման լայն ու մասշտաբային ծրագիրը։ Երկրի ազգաբնակչության յուրաքանչյուր շնչի հաշվով ռեալ եկամուտներն ավելացան 19 տոկոսով, բարելավվեցին ավելի քան 45 մլն մարդու բնակարանային պայմանները, նկատելիորեն բարձրացավ աշխատավորների գնողունակությունը։*

*Մեր երկրի այդ ընդհանուր հաջողություններում իրենց ներդրումն ունեն Սովետական Միության բոլոր եղբայրական հանրապետությունները։ Որոշակի նվաճումների են հասել նաև Հայաստանի աշխատավորները։ Այդ մասին խոսվեց ՀԿԿ Կենտկոմի՝ այս տարվա հունվարյան պլենումում, որի որոշումները, հիրավի, արժանացան աշխատավորական լայն զանգվածների հավանությանը։ Դրա լավագույն ապացույցը վերջերս մամուլում հրապարակված հանրապետության աշխատավորների սոցմրցման պարտավորությունների ծրագիրն է։*

*Հանրապետության աշխատավորության լարված աշխատանքի, հայրենասիրական ջանքերի շնորհիվ հնգամյակի անցած չորս տարվա ընթացքում ազգային եկամուտն աճեց 36 տոկոսով, որը բարձր է հնգամյա պլանի առաջադրանքներից։ Նշված տարիներին մեզ մոտ արտադրվեց 13 մլրդ 645 մլն ռուբլու արտադրանք՝ ութերորդ հնգամյակի համապատասխան ժամանակաշրջանի 8 մլրդ 728 մլն ռուբլու դիմաց։ Նկատելիորեն ամրապնդվեց հանրապետության էներգետիկ բազան։ Հնգամյակի տարիներին արտադրվեց 31 մլրդ 165 մլն կվտ էլեկտրաէներգիա, որը հնարավորություն տվեց բավարարելու ժողովրդական տնտեսության և բնակչության աճող պահանջմունքները։*

*Կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներին համապատասխան, հատուկ ուշադրություն նվիրվեց ժողովրդական սպառման ապրանքների արտադրությանը։ 1974 թվականին, 1970-ի համեմատությամբ, դրանց արտադրությունն աճեց 31 տոկոսով, իսկ հնգամյակի չորս տարում արտադրվեց մոտ 4 մլրդ 700 մլն ռուբլու ժողովրդական սպառման ապրանքներ։*

*Մեր հանրապետության աշխատավորության եռանդուն ջանքերը լավ արդյունքներ տվեցին հատկապես հնգամյակի որոշիչ տարում։ Նախորդ տարիների համեմատությամբ ձեռք բերվեց ազգային եկամտի, արտադրության ծավալի, աշխատանքի արտադրողականության առավել բարձր աճ։ Արդյունաբերությունը տարեկան պլանը կատարեց 103 տոկոսով, նախորդ տարվա համեմատությամբ աճը կազմեց 10,4 տոկոս, աշխատանքի արտադրողականությանը՝ 7,3 տոկոս, ազգային եկամուտն աճեց 9,5 տոկոսով։ Շատ ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների կոլեկտիվներ հաջողությամբ կատարեցին իրենց ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Լավ աշխատեցին և տարեկան առաջադրանքները գերակատարեցին Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանը, «Հայէլեկտրալույս» արտադրական միավորու-*

նույնպես ցածր է, ապա Վարդենիսի, Թալինի, Ազիզբեկովի, Կրասնոսելսկի ու մի քանի այլ շրջաններում այն չի անցնում 1.000—1.200 կիլոգրամից։

Հանրապետությունում ներկայումս խոշոր աշխատանքներ են կատարվում պետական ու միջտնտեսային կոմպլեքսների ստեղծման միջոցով անասնապահությունն ինդուստրիալ հիմքերի վրա փոխադրելու նպատակով։ Կառուցվել ու կառուցվում են խոզաբուծական, խոշոր եղջերավոր անասունների, թռչնաբուծական, կաթնային թեքումով մի շարք խոշոր կոմպլեքսներ։

Անհրաժեշտ բարձրության վրա չի գտնվում հոտի վերարտադրությունը։ Անասունների մայրական կազմում մեծ տոկոս է կազմում ստերջությունը, որի հետևանքով 100 մայրի հաշվով հորթերի ծինը չի անցնում 73—78-ից, իսկ գառներինը՝ 80—88-ից։ Իսկ այդ նշանակում է, որ կոլտնտեսություններն ու սովխոզները յուրաքանչյուր տարի պակաս են ստանում 14,5 հազար հորթ և մոտ 150 հազար գառ։ Այս ցուցանիշն առավել ցածր է Ամասիայի, Կրասնոսելսկի, Սպիտակի, Թումանյանի, Ապարանի, Գորիսի, Նոյեմբերյանի շրջանների տնտեսություններում։

Հանրապետության տնտեսություններում խոշոր թերություններ կան գյուղատնտեսական տեխնիկայի արդյունավետ օգտագործման, արտադրության մասնագիտացման ու կենտրոնացման բնագավառներում, ինչպես նաև արտադրության մեջ գիտության նվաճումների ներդրման և բուն գյուղատնտեսական գիտահետազոտական հաստատությունների գործունեության մեջ։

Այդ ամենի, ինչպես նաև աշխատանքի վատ կազմակերպման հետևանքով հանրապետության շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ շարունակում են աշխատել մեծ վնասներով։ Նախնական տվյալները ցույց են տալիս, որ 1974 թ. հանրապետության 374 կոլտնտեսություններից 109-ը և 372 սովխոզներից ու պետական գյուղատնտեսական մյուս ձեռնարկություններից 231-ը անցած տարին փակեցին համապատասխանաբար 3,5 և 19 մլն ռուբլու վնասով։

Տնտեսությունների այդպիսի վիճակը, ինչպես նաև մեծ չափերի հասնող կորուստները, ապարդյուն ծախսերը, վատնումները և յուրացումները տեղերում ծնում են սպառողական հոգեբանություն, պետությունից անընդհատ ստանալու, սակայն այն չհատուցելու տրամադրություն։ Այդպիսի դրությունը տնտեսությունների ղեկավարների, շրջսովետների գործկոմների, ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության ու նրա տեղական մարմինների միանգամայն անբավարար գործունեության հետևանք է։ Ինքնին հասկանալի է, որ այսուհետ չի կարելի հաշտվել գյուղատնտեսական արտադրության կազմակերպման ու ղեկավարման նման պրակտիկայի հետ։

Հայտնի է, որ հանրապետության նեղ տեղերից մեկը եղել և մնում է կապիտալ շինարարությունը։ Ամբողջությամբ վերցրած, հնգամյակի տարիներին կապիտալ ներդրումների առաջադրանքը կատարվել է 93,9 տոկոսով և չի իրացվել 197 մլն ռուբլու կապիտալ։

Կապիտալ շինարարության պլանների սիստեմատիկ թերակատարման հետևանքով չգործարկվեցին արտադրական մի շարք նոր օբյեկտներ ու հզորություններ։ Միայն 1974 թվականին չգործարկվեցին մի շարք այնպիսի հզորություններ, ինչպիսիք են՝ «Պոլիվինիլացետատ» գործարանում 500 տոննա պոլիվինիլբուտիրալի, Երևանի էլեկտրատեխնիկական գործարանում 75 հազար հատ էլեկտրաշարժիչի, Շինուհայրի ռետինե կոշիկների գործարանի, Սևանի ալրաղաց կոմբինատի էլևատորի, Հոկտեմբերյանի կահույքի ֆաբրիկայի, Նոր Խարբերդի հնդկահավերի ֆաբրիկայի, ինչպես նաև արտադրական հզորություններ Ալավերդու լեռնամետալուրգիական, Իջևանի «Բենտոնիտ» կոմբինատներում, Երևանի «Հիդրոհաղորդակ», Սպիտակի վերելակաշինական գործարաններում և այլն։ Բայց չէ՞ որ կապիտալ շինարարությունը մեկուսի օղակ չէ և գործերի անբարենպաստ վիճակն այս բնագավառում մեծապես հարվածում է արդյունաբերության զարգացման տեմպերին։

Հասկանալի է, որ կապիտալ շինարարության պլանների սիստեմատիկ թերակատարումն անխուսափելիորեն հանգեցնում է չավարտված շինարարության ծավալի աճի։

Այսպիսի վիճակը, իհարկե, նորմալ համարել չի կարելի։ Այն հասցնում է



պետական միջոցների սառեցման, կապիտալ ներդրումների արդյունավետության անկման։ Այս հետևությունները հաստատվում են նաև անցյալ տարվա կապիտալ շինարարության վիճակով։ Չնայած հանրապետությունում կապալառուական աշխատանքների պլանի կատարմանը և 1973 թվականի համեմատությամբ ձեռք բերված աճին, շինարարական մի շարք կազմակերպություններ 1974 թվականին չկատարեցին իրենց պլանային առաջադրանքները։ Արդյունաբերական շինարարության մինիստրության 18 տրեստներից 7-ը չապահովեցին իրենց պլանների կատարումը։ Անցած տարի վատ աշխատեցին մասնավորապես «Բարձրաբերձշին» տրեստը, որը պլանային առաջադրանքները կատարեց միայն 89,5 տոկոսով, «Ախթալշին» տրեստը՝ 92,5 տոկոսով, «Ջերմուկշինը»՝ 85,5 տոկոսով, «Կիրշինը»՝ 92,5 տոկոսով և այլ կազմակերպություններ։ Այստեղ, իհարկե, արդեն խոսք չի կարող լինել սոցիալիստական պարտավորությունների կատարման մասին։

Դրությունը ոչնչով լավ չէ բնակարանային շինարարության բնագավառում։ Մեր կուսակցությունն ու սովետական կառավարությունը խոշոր միջոցներ են հատկացնում այդ նպատակին։ Սակայն շինարարական մի շարք կազմակերպություններ տարեցտարի չեն կատարում այդ չափազանց կարևոր առաջադրանքը։ Արդյունաբերական շինարարության մինիստրությունը, չնայած ամբողջությամբ վերցրած կատարեց բնակարանային շինարարության անցյալ տարվա պլանը, սակայն չապահովեց Երևանի քաղսովետի համար 17 հազար քառակուսի մետր, Սևանի, Աբովյանի, Մասիսի, Ազիզբեկովի շրջանների, ինչպես նաև Ջերմուկ քաղաքի համար տասնյակ հազարավոր քառակուսի մետրով բնակելի տների շահագործման հանձնումը։ Ձախողվեցին 2.296 աշակերտական տեղով դպրոցական 6 շենքերի շինարարությունը։

Լուրջ թերություններ կան նաև գյուղական շինարարության մինիստրության գործունեության մեջ։ Անցած տարի մինիստրության կազմակերպությունները շահագործման չհանձնեցին կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին մոտ 17 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, չկատարեցին դպրոցական ու նախադպրոցական մի շարք շենքերի շահագործման առաջադրանքները։

Անցյալ տարի միանգամայն վատ աշխատեցին Երևանի քաղսովետի «Գլխերևանշին», «Հայտրանսշին», «Հայցվետմետշին» տրեստները։ Այդ կազմակերպությունների ղեկավարների ու կոլեկտիվների անցյալ տարեսկզբի խոստումները և ստանձնած պարտավորությունները, ինչպես կյանքը ցույց տվեց, օճառի պղպջակներ էին։

Բնակարանային շինարարության ասպարեզում տիրող անմխիթար վիճակը նշված կազմակերպությունների ղեկավարների անտարբերության ու անպատասխանատվության հետևանք է։

Չափազանց լուրջ անհանգստություն է պատճառում շինարարության որակը։ Խոսքը վերաբերում է ո՛չ միայն հարդարման, սանիտարա-տեխնիկական ու էլեկտրամոնտաժային աշխատանքների ցածր որակին, այլև բացահայտ խոտանին։ Վթարները Զարենցավանում, Երևանի ավտոպահեստամասերի, Սևանի էլեկտրաապակեմեկուսիչ գործարաններում խոսում են այն մասին, որ շինարարական մի շարք կազմակերպությունների ղեկավարներ դեռևս, ինչպես հարկն է, լիակատար պատասխանատվություն չեն զգում շինարարության որակի համար։

Ասենք և այն, որ կապիտալ շինարարության ասպարեզում տիրող այդպիսի վիճակն ամենից առաջ շինարարական արտադրության անբավարար կազմակերպման հետևանք է։ Համապատասխան մի շարք մինիստրություններ ու գերատեսչություններ մինչև այժմ էլ, ինչպես հարկն է, չեն մտահոգվում շինարարական աշխատանքների կատարելագործման, պետական միջոցների ռացիոնալ ու արդյունավետ օգտագործման, աշխատանքային կարգապահության ամրապնդման խնդիրներով։ Հենց աշխատանքի վատ կազմակերպմամբ պետք է բացատրել այն փաստը, որ շինարարական շատ կազմակերպություններում դեռևս մեծ են աշխատաժամանակի կորուստները, կադրերի հոսունությունը։

Հաշվարկները ցույց են տալիս, որ բուն արտադրության մեջ շինարարա-
կան հիմնական մեքենաներն օգտագործվում են ոչ ավելի, քան 75 տոկոսով:

Կապիտալ շինարարության նախատեսված խոշոր ծրագրի իրագործումը
պահանջում է լրջորեն բարելավել հենց կապիտալ ներդրումների պլանավորու-
մը: Ջավարտված շինարարական կառույցների սիստեմատիկ աճը բացատրր-
վում է ո՛չ միայն նրանով, որ մինիստրություններն ու գերատեսչությունները
վճռական միջոցների չեն դիմում դրանք կրճատելու, միջոցները բարձր տեխ-
նիկական պինվածություն ունեցող կառույցների վրա կենտրոնացնելու համար,
այլև նրանով, որ պլանավորման ժամանակ կոպիտ կերպով խախտվում են
օբյեկտների շինարարության ժամկետները, որ համառորեն շարունակվում է
այն պրակտիկան, երբ պլանների մեջ են մտցվում այնպիսի օբյեկտների շի-
նարարական աշխատանքները, որոնք ապահովված չեն անհրաժեշտ նախա-
գծային փաստաթղթերով և նույնիսկ չի յուրացված շինարարության տեղա-
մասը:

Հանրապետության տնտեսական ու կուլտուրական շինարարության աս-
պարեզում տեղ գտած լուրջ թերությունները կուսակցական, պետական ու աշ-
խատանքային կարգապահության միանգամայն ցածր մակարդակի, անհրա-
ժեշտ վերահսկողության ու պահանջկոտության բացակայության արդյունք են:
Առանձին ղեկավար ընկերների մեղքով ու բացահայտ թողտվությամբ տնտե-
սական ու կուլտուրական շինարարության կառավարման գիտական մեթոդնե-
րը վերջին տարիներին փոխարինվեցին կամայական որոշումներով ու վոլյուն-
տարիզմով, թերությունների սկզբունքային քննադատությունը՝ ամեն ինչ նե-
րելու և պարադային ինքնագովության մթնոլորտով, թերություններն անվրդով
հանդուրժելու հոգեբանության արմատակալմամբ: Կադրերի ընտրության ու
տեղաբաշխման գործում խորացավ անսկզբունքայնությունն ու տնավարու-
թյունը, անտեսվեցին աշխատողի գնահատման լենինյան չափանիշները:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումը տվեց մեր հան-
րապետության կուսակցական, սովետական օրգանների ու տնտեսական մար-
մինների բացթողումների սկզբունքային գնահատականը, մշակեց դրանց հաղ-
թահարման, կուսակցության առաջադրանքների անթերի կենսագործման մի-
ջոցառումներ:

Ստեղծված իրավիճակը, հնգամյակի եզրափակիչ տարվա մեծ ու պա-
տասխանատու խնդիրների հաջող կենսագործման շահերը մեր կուսակցական
կազմակերպություններից, սովետական ու տնտեսական օրգաններից, բան-
վոր դասակարգից, կոլտնտեսային գյուղացիությունից ու ինտելիգենցիայից
հրամայաբար պահանջում են վճռական բեկում մտցնել աշխատանքի բոլոր
ասպարեզներում:

Անհրաժեշտ է, ամենից առաջ, վճռականորեն բարձրացնել բոլոր սկզբնա-
կան կուսակցական կազմակերպությունների մարտունակությունը, մինիստրու-
թյունների ու գերատեսչությունների պատասխանատվությունը իրենց բնագա-
վառի գործերի վիճակի համար:

Սովետական սոցիալիստական մեր մեծ հայրենիքը դուրս է եկել զարգաց-
ման նոր բնագիծ: Ամուր հենվելով հնգամյակի նախորդ չորս տարիներին
ձեռք բերված արդյունքների վրա, սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել
եզրափակիչ տարվա պատասխանատու խնդիրների կենսագործմանը: Այդ խըն-
դիրները հստակորեն սահմանված են ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1974 թ.)
պլենումի, ՍՍՀՄ Գերագույն սովետի իններորդ գումարման երկրորդ սեսիայի
կողմից:

Մշակելով 1975 թվականի՝ հնգամյակի եզրափակիչ տարվա պլանը, կու-
սակցությունը հաշվի է առել կուտակված փորձը, կյանքի կողմից առաջադրր-
ված նոր պրոբլեմները: Կուսակցությունը գտնում է, որ այդ պլանի առաջա-
դրանքները լարված են, սակայն մենք ամեն անհրաժեշտ բան ունենք դրանց
հաջող կատարման ու գերակատարման համար:

1975 թվականի ժողովրդատնտեսական պլանի, ինչպես նաև ամբողջու-
թյամբ վերցրած հնգամյա պլանի հաջող կատարումը նոր, խոշոր քայլ կլինի
երկրի տնտեսական հզորության հետագա ամրապնդման, ժողովրդական տըն-
տեսության, գիտության ու կուլտուրայի բոլոր ճյուղերի զարգացման գործում,
ամուր հիմք կստեղծի կուսակցության երկարաժամկետ սոցիալ-տնտեսական
քաղաքականության իրականացման համար: Այդ խնդիրների լուծումը տնտե-
սական, քաղաքական ու միջազգային հսկայական նշանակություն ունի:

Երկրում ստեղծարար աշխատանքի հզոր ալիք առաջ բերեցին ՍՄԿԿ Կենտ-
կոմի դեկտեմբերյան պլենումի որոշումները, կուսակցության ու սովետական
ժողովրդին ՍՄԿԿ Կենտկոմի ուղղած դիմումը, հնգամյակի եզրափակիչ տար-
վա առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար արդյունաբերու-
թյան, շինարարության ու տրանսպորտի, գյուղի աշխատավորների համամիու-
թենական սոցիալիստական մրցություն ծավալելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտ-
կոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը:

Հանրապետության աշխատավորության բարձր գիտակցականության, նրա
ջերմ հայրենասիրության վառ վկայությունն է այն, որ արդեն հանդիպակաց
պլաններ են ընդունել շատ ձեռնարկություններ, բազմաթիվ կոլտնտեսություն-
ների ու սովխոզների, շրջանների ու քաղաքների, շինարարական կազմակեր-
պությունների կոլեկտիվներ: Նախնական արդյունքները ցույց են տալիս, որ
նրանք պատվով դուրս կգան մրցությունից:

Հանրապետության էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպերը հնարավո-
րություն կտան հետևողականորեն կենսագործելու բնակչության կենսամա-
կարդակի բարձրացման՝ կուսակցության XXIV համագումարի մշակած կուրսը:

***

Մեր առջև կանգնած բարդ ու պատասխանատու խնդիրների հաջող կեն-
սագործումը թելադրում է, որպեսզի բոլոր աշխատողները պարզ պատկերաց-
նեն, թե ինչպիսի գործոնների հաշվին պետք է իրականացվեն զարգացման նա-
խատեսված տեմպերը:

Ճիշտ հաշվարկելով իրենց հնարավորություններն ու եղած ռեզերվները և
մտնելով համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, մեր արդյու-
նաբերության ձեռնարկությունների, շինարարական կազմակերպությունների
կոլեկտիվները, գյուղի աշխատավորները ստանձնել են բարձր պարտավորու-
թյուններ: Արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները պարտա-
վորվել են արտադրության արդյունավետությունը, աշխատանքի արտադրողա-
կանությունը բարձրացնելու, նորագույն տեխնիկայի ու առաջավոր տեխնոլո-
գիայի ներդրման, մեքենաների ու մեխանիզմների, աշխատաժամանակի ռա-
ցիոնալ օգտագործման շնորհիվ 1975 թվականի արտադրանքի արտադրության
և իրացման պետական պլանը կատարել ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 26-ին,
տալ 80 մլն ռուբլու արտապլանային արտադրանք, այդ թվում 40 միլիոնը՝
հանդիպակաց պլաններով:

Հանրապետության գյուղի աշխատավորները ևս պարտավորվել են առա-
վել բարձր արդյունքներով ավարտել ընթացիկ տնտեսական տարին:

Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ են մտել նաև մեր
շինարարները: Նրանք պարտավորվել են շինմոնտաժային աշխատանքների
տարեկան պլանը կատարել ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 28-ին, բարձրաց-
նել շինարարական աշխատանքների որակը: Նրանք խոստացել են նաև պլա-
նից ավելի գործարկել 20 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն,
մի շարք դպրոցներ, նախադպրոցական հաստատություններ և այլ օբյեկտներ:

Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ ոտքի հանել ամբողջ
հասարակայնությանը պետական ու աշխատանքային կարգապահությունն ամ-
րապնդելու, հանձնարարված գործի նկատմամբ յուրաքանչյուրի պատասխա-
նատվությունը բարձրացնելու, մեր հասարակարգին խորթ վարք ու բարքի
մնացուկներն արմատապես հաղթահարելու համար:

Անկասկած, հանրապետության աշխատողները բարձր կպահեն սոցիալիս-
տական մրցության դրոշը, ուժ ու եռանդ չեն խնայի 1975 թվականի՝ հնգամ-
յակի եզրափակիչ տարվա հոյակապ խնդիրները հաջողությամբ կենսագործե-
լու, մեր սոցիալիստական հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզո-
րությունն ավելի ամրապնդելու, կոմունիստների պանծալի կուսակցության
XXV համագումարը պատվով դիմավորելու համար:

# ԱՌԱՋԻՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ

Ռ. Լ. ՄՈՎՍԻՍՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*1905—1907 ԹԹ. ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ՅՈՒՐԱՀԱՏՈՒԿ տեղ է գրավում Ռուսաստանի բազմազգ ժողովուրդների սոցիալական-ազատագրական պայքարի և համաշխարհային ողջ պատմության տարեգրության մեջ։ Դա իմպերիալիզմի դարաշրջանի առաջին ժողովրդական հեղափոխությունն էր, որը վիթխարի դեր խաղաց ո՛չ միայն Ռուսաստանի պատմական ճակատագրի, այլև բովանդակ մարդկության վերընթաց զարգացման համար։*

*1905 թ. հունվարի 9-ի Պետերբուրգի արյունոտ դեպքերով սկսված ժողովրդական այդ հեղափոխությունը շարժման մեջ դրեց Ռուսաստանի հասարակական ողջ ուժերին, և բոլոր դասակարգերն ու կուսակցությունները, առանց ժամանակ կորցնելու, մշակեցին իրենց հատուկ ստրատեգիան ու տակտիկան։*

*Բոլշևիկների կուսակցության առջև հրամայաբար ծառացավ տեսական ու պրակտիկ նշանակության բազմաթիվ պրոբլեմների լուծման խնդիրը։ Հարկավոր էր գիտականորեն բացահայտել սկսված հեղափոխության սոցիալ-տնտեսական պատճառները, բնույթն ու առանձնահատկությունները, սահմանել հեղափոխական և հակահեղափոխական ուժերն ու նրանց հարաբերակցությունը, կանխագծել պայքարի և կուսակցության ղեկավար դերի իրականացման ձևերն ու եղանակները։*

*Հեղափոխության այդ բոլոր հարցերի արմատական պատասխանը տվեց կուսակցության III համագումարը։ Այն մշակեց պրոլետարիատի ստրատեգիան ու տակտիկան, որոնց համակողմանի տեսական հիմնավորումը, այնուհետև, տվեց Վ. Ի. Լենինն իր հռչակավոր* Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ *գրքում։*

*«Հեղափոխության տարիներին,— ասված է «Ռուսաստանի 1905—1907 թվականների հեղափոխության 70-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— վառ կերպով դրսևորվեց Վ. Ի. Լենինի դերը՝ որպես մարքսիզմի մեծագույն տեսաբանի և աշխատավորության առաջնորդի։ Լենինը հիմնավորեց ժողովրդական հեղափոխության մեջ պրոլետարիատի հեգեմոնիայի գաղափարը, ցույց տվեց, որ որքան լայն ու խորն է մասսաների հեղափոխական շարժումը, այնքան ավելի են աճում պրոլետարական կուսակցության, նրա գաղափարա-քաղաքական ու կազմակերպչական գործունեության դերն ու նշանակությունը»։*

*1905—1907 ԹԹ. ԲՈՒՐԺՈՒԱ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ նախապատրաստվել էր երկրի սոցիալ-տնտեսական ու քաղաքական զարգացման ողջ ընթացքով և առանձնահատկություններով։ Դրա պատճառները տնտեսական, քաղաքական, սոցիալական ու ազգային այն խոր հակասություններն էին, որոնք բզկտում էին Ռուսաստանի հասարակական-քաղաքական օրգանիզմը։*

*XIX դարի վերջին և XX դարի սկզբին Ռուսաստանը թևակոխեց զարգացման իմպերիալիստական փուլը, դրան հատուկ բոլոր առանձնահատկություններով և հակասություններով։ Բայց, այնուհանդերձ, 1861 թ. ռեֆորմից հետո դեռևս զգալի չափերի հասնող ճորտատիրության մնացորդները խոչընդոտում էին կապիտալիզմի ուղիով ոչ միայն գյուղի, այլև ողջ էկոնոմիկայի, արտադրաուժերի հետագա զարգացմանը, կասեցնում կամ դանդաղեցնում էին հասարակության վերընթաց պրոցեսը։ Այդ հանգամանքը, ինչպես Վ. Ի. Լենինն էր մատնանշում, ստեղծել էր լուրջ հակասություն համեմատաբար զարգացած կապիտալիստական արդյունաբերության և միջնադարի կնիքն ուժեղ կերպով կրող հողագործության միջև։*

*Հեղափոխության արմատական խնդիրներից մեկը ճորտատիրության մնացորդների վերացմամբ այդ հակասության լուծումն էր, որը պետք է ավելի նպաստավոր պայմաններ ստեղծեր և ավելի լայն ուղի հարթեր կապիտալիզմի զարգացման համար ինչպես քաղաքում, այնպես էլ՝ առավելապես գյուղում։*

*Բայց իր սոցիալական բովանդակությամբ ռուսական բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը արևմտաեվրոպական բուրժուական և բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունների սոսկ կրկնությունը չէր, ինչպես պնդում էին մենշևիկները։ Այն ուներ մի շարք էական առանձնահատկություններ, որոնք կարևոր դեր խաղացին նրա ողջ ընթացքում։*

*Արևմտաեվրոպական բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունները կատարվեցին կապիտալիզմի վերընթաց զարգացման շեմին։ Դա մի դարաշրջան էր, երբ արմատավորվող բուրժուական արտադրահարաբերությունները ո՛չ թե խոչընդոտում, այլ նպաստում և լայն պայմաններ էին ստեղծում արտադրաուժերի, ողջ հասարակության վերընթաց զարգացման համար։ Ռուսական հեղափոխությունը կատարվեց պատմական բոլորովին այլ ժամանակաշրջանում և այլ պայմաններում՝ իմպերիալիզմի դարաշրջանում, երբ համաշխարհային մասշտաբով կապիտալիզմը տնտեսական ու քաղաքական տեսակետից հասել էր իր զարգացման վերջին աստիճանին և սկսել նեխման պրոցես ապրել, երբ բուրժուական արտադրահարաբերություններն արդեն դադարել էին առաջադիմական լինելուց, վերածվել արտադրաուժերի և ամբողջ հասարակության վերընթացը խոչընդոտող գործոնի։ Իմպերիալիզմը, ինչպես Արևմուտքում, այնպես էլ Ռուսաստանում, սոցիալ-տնտեսական, քաղաքական օբյեկտիվ և սուբյեկտիվ նախադրյալներ էր ստեղծել կապիտալիզմի կործանման, կոմունիստական նոր հասարակարգին անցնելու համար։*

*Ճորտատիրության մնացորդների վերացմամբ բուրժուազիայից առավել շահագրգռված էր բնակչության մեծամասնությունը կազմող ամբողջ գյուղացիությունը, որի կեսից ավելին՝ 48,5 միլիոնը, 19-րդ դարի վերջին կազմում էին գյուղական պրոլետարներն ու կիսապրոլետարները։ Գյուղատնտեսական բանվորներն իրենց ընտանիքների անդամներով ավելի քան 10 միլիոն էին։ Ռուսաստանյան գյուղը ավելի շատ տառապում էր ոչ թե կապիտալիզմից, այլ նրա անբավարար զարգացածությունից։ Գյուղացիական բնակչության այդ վիթխարի մասսան իրականում կալվածատիրական ու կուլակային ստրկության մեջ էր գտնվում և ապրում էր ապագյուղացիացման համատարած պրոցես։*

*Աշխատավոր գյուղացիության այդ թշվառ վիճակը նրան ակտիվ պայքարի հանեց ագրարային հարցի լուծման համար։ Այդ առումով ռուսական հեղափոխության կարևոր առանձնահատկություններից մեկն այն էր, որ այն նաև, գերազանցապես,* ագրարային-գյուղացիական *հեղափոխություն էր։ Անդրադառնալով հեղափոխության բնույթի այդ առանձնահատկությանը, Վ. Ի. Լենինը գրել է. «Ագրարային հարցը կազմում է Ռուսաստանի բուրժուական հեղափոխության հիմքը և իրենով պայմանավորում այդ հեղափոխության ազգային առանձնահատկությունները» (Երկեր, հ. 13, էջ 540)։*

*ՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ ԱՌԱՋԻՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ արևմտաեվրոպական բուրժուա-դեմոկրատական հեղափոխություններից արմատապես տարբերվում էր նաև նրանով, որ դրա շարժիչ գլխավոր ուժն ու հեգեմոնը բուրժուազիան չդարձավ։*

*Արևմտաեվրոպական բուրժուական հեղափոխությունները կատարվեցին դասակարգային ուժերի այնպիսի հարաբերակցության պայմաններում, երբ բուրժուազիան առաջադիմական ուժ էր, իր հետևից էր տանում այսպես կոչված ամբողջ «երրորդ դասին», որի մեջ էր մտնում նաև պրոլետարիատը։ Բուրժուա-*

լետարական: Եվ այդ ոչ միայն այն պատճառով, որ պրոլետարիատն էր նրա գլխավոր շարժիչ ուժն ու հեգեմոնը, իսկ պայքարի գլխավոր ձևերը պրոլետարական էին. Վ. Ի. Լենինը ելնում էր և նրանից, որ ցարիզմը հավասարապես պաշտպանում էր ինչպես կալվածատիրության, այնպես էլ մոնոպոլիստական կապիտալի շահերը: Հեղափոխությունում պրոլետարիատի առաջադրած ընդհանուր դեմոկրատական պահանջների իրականացումը, լիբերալ բուրժուազիայի քաղաքական մեկուսացումը, ժողովրդաիշխանության հաստատումը պետք է ո՛չ միայն խորտակեին միապետական ռեժիմը, այլև խարխլեին մոնոպոլիստական կապիտալի և, ընդհանրապես, ռուսաստանյան բուրժուազիայի տնտեսական ու քաղաքական դիրքերը: Այդ իմաստով, ռուսաստանյան հեղափոխությունը ո՛չ միայն հակաֆեոդալական, այլև հակաիմպերիալիստական առաջին հեղափոխությունն էր:

Բայց առանց բուրժուա-դեմոկրատական հեղափոխության հաղթանակի, առանց ընդհանուր դեմոկրատական խնդիրների լուծման, Վ. Ի. Լենինն անհնար էր համարում սոցիալիստական հեղափոխությանն անցնելը: Նա գրում էր. «Պրոլետարիատը մինչև վերջը պետք է կենսագործի դեմոկրատական հեղաշրջումը, իրեն միացնելով գյուղացիության մասսան, որպեսզի ուժով ճզմի ինքնակալության դիմադրությունը և չլատի բուրժուազիայի անկայունությունը: Պրոլետարիատը պետք է սոցիալիստական հեղաշրջում կատարի, իրեն միացնելով բնակչության կիսապրոլետարական տարրերի մասսան, որպեսզի ուժով կոտրի բուրժուազիայի դիմադրությունը և չլատի գյուղացիության ու մանր բուրժուազիայի անկայունությունը» (Երկեր, հ. 9, էջ 114):

Բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունն անմիջապես սոցիալիստականի վերաճելու գլխավոր պայմաններից ու գործոններից մեկը կուսակցության III համագումարը և Վ. Ի. Լենինը համարեցին հեղափոխության հաղթանակից հետո ստեղծվող իշխանության օգտագործումը: Այդ իմաստով բոլորովին նոր ձևով Վ. Ի. Լենինը դրեց նաև բուրժուա-դեմոկրատական հեղափոխության հաղթանակից հետո իշխանության հարցի լուծումը: Հակառակ մենշևիկների, Վ. Ի. Լենինը համոզիչ ցույց տվեց, որ հեղափոխության վճռական հաղթանակի դեպքում իշխանությունը կանցնի ոչ թե բուրժուազիային, այլ՝ բանվոր դասակարգին ու գյուղացիությանը, և անպայման կստեղծվի բանվոր դասակարգի ու գյուղացիության հեղափոխական դեմոկրատական դիկտատուրա: Դա պատմական անհրաժեշտություն էր, «...որովհետև, —ինչպես Լենինն էր նշում,— պրոլետարիատին և գյուղացիությանն անհապաղ և անպայման հարկավոր փոխակերպությունների իրականացումն առաջ կբերի թե՛ կալվածատերերի, թե՛ խոշոր բուրժուաների, թե՛ ցարիզմի կատաղի դիմադրությունը: Առանց դիկտատուրայի անհնարին է կոտրել այդ դիմադրությունը, ետ մղել հակահեղափոխական փորձերը» (Երկեր, հ. 9, էջ 55):

Տեսական ու գործնական սկզբունքային նշանակություն ուներ հեղափոխության հաղթանակից հետո ստեղծվելիք կառավարության հարցը:

Մենշևիկները գտնում էին, որ ցարիզմի տապալումից հետո իշխանությունը պետք է անցնի բուրժուազիային, հետևաբար կառավարությունը ևս պետք է լինի մաքուր բուրժուական, և սոցիալ-դեմոկրատիան դրան ոչ մի մասնակցություն չպետք է ունենա:

Կառավարության հարցի լուծումը բոլորովին այլ ձևով դրեցին բոլշևիկները: Նրանք գտնում էին, որ ստեղծվող իշխանության ձևը կարող է լինել միայն ու միայն զինված ժողովրդի վրա հենվող ժամանակավոր հեղափոխական կառավարությունը: Իսկ սոցիալ-դեմոկրատիան որոշակի նպաստավոր պայմաններում պետք է մասնակցի դրան: Դա ոչ միայն հնարավոր է, այլև անհրաժեշտ ու պարտադիր, որովհետև միայն այդպիսի կառավարությանը մասնակցելով սոցիալ-դեմոկրատիան հնարավորություն կստանար առաջ մղելու հեղափոխությունը, կառավարության գործունեությունն ուղղելու այնպիսի սոցիալ-տնտեսական ու քաղաքական վերափոխումների, որոնք ուղի կհարթեին և կնպաստեին բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունն անմիջապես սոցիալիստականի վերաճմանը, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատմանը:

Բոլշևիկների համար հեղափոխության սկզբունքային հարցերից մեկը ժո-



ղովրդական մասսաների դասակարգային պայքարի ձևերի ու եղանակների մշակումն էր: Ցարիզմի տապալման վճռական միջոց նրանք համարեցին զինված ապստամբությունը: Այդ մասին ՌՍԴԲԿ երրորդ համագումարի որոշման մեջ ասված է. «ՌՍԴԲԿ երրորդ համագումարն ընդունում է, որ զինված ապստամբության միջոցով ինքնակալության դեմ անմիջական պայքար մղելու համար պրոլետարիատին կազմակերպելու խնդիրը կուսակցության ամենագլխավոր և անհետաձգելի խնդիրներից մեկն է ներկա հեղափոխական մոմենտում» (ՍՄԿԿ-ն բանաձևերում..., մաս I, էջ 94):

Զենքի միջոցով ցարիզմի տապալումը բոլշևիկները համարեցին միակ եղանակը, որովհետև ցարական ռազմաբյուրոկրատական ապարատի ջախջախումը այլ ձևով հնարավոր չէր: Ցարական բռնությանը պետք էր հակադրել զինված ժողովրդի բռնությունը: Մենշևիկները չհասկացան այդ, և ոչ միայն հանդես եկան զինված ապստամբության տակտիկայի դեմ, այլև պրակտիկայում ամեն կերպ խանգարեցին ապստամբության կազմակերպմանը: Բայց մասսաներին միանգամից և մի հարվածով չէր կարելի զինված ապստամբության հանել: Այն նախապատրաստելու համար սկզբից հարկավոր էր կիրառել պայքարի խաղաղ ձևեր: ՌՍԴԲԿ երրորդ համագումարը դրանց մեջ առանձնահատուկ տեղ հատկացրեց մասսայական քաղաքական գործադուլների կազմակերպմանը: Դա պրոլետարիատի դասակարգային պայքարի այն անհրաժեշտ ձևն էր, որը մինչ այդ կամ չէր կիրառվել, կամ մասնակի տեղ էր գրավել պրոլետարիատի հեղափոխական պայքարի զինանոցում:

Այդ իմաստով 1905—1907 թթ. հեղափոխությունը խոշոր նշանակություն ունեցավ պրոլետարիատի դասակարգային պայքարի ձևերի հետագա կատարելագործման խնդրում:

1905—1907 թթ. հեղափոխությունը լիովին հաստատեց բոլշևիկների քաղաքական կուրսի, նրանց ստրատեգիայի ու տակտիկայի միակ ճիշտ ու գիտական լինելը, ապացուցեց մենշևիկների, տրոցկիստների և մանրբուրժուական մյուս կուսակցությունների ու հոսանքների տակտիկայի սխալ ու սնանկ լինելը: Ռուսաստանյան բուրժուազիան լիովին անցավ ցարիզմի հետ գործարքի քաղաքականությանը և քիչ դեր չկատարեց հեղափոխության պարտության գործում: Հեղափոխության շարժիչ ուժերն իրապես դարձան բանվորներն ու գյուղացիները: Ցարական ինքնակալության դեմ մղված պայքարում բանվոր դասակարգը ցուցաբերեց անսասան տոկունություն, ազատության, սոցիալական արդարության և առաջադիմության համար զոհաբերությունններ կատարելու մեծագույն պատրաստակամություն:

1905 Թ. ՀՈՒՆՎԱՐԻ 9-ԻՆ ՊԵՏԵՐԲՈՒՐԳԻ պրոլետարների վրա ցարական սոլդատների ու զորքերի կրակոցներին, որոնց զոհը դարձան 4.600 սպանվածներ և վիրավորներ, անմիջապես մասսայական գործադուլներով ու քաղաքական ցույցերով պատասխանեցին Մոսկվայի, Ռիգայի, Վարշավայի, Անդրկովկասի և երկրի բազմաթիվ այլ քաղաքների ու շրջանների պրոլետարները: 1905 թ. հունվարին գործադուլ արեցին ավելի քան 444 հազար բանվորներ: Անդրադառնալով հունվարի 9-ի իրադարձությունների պատմական նշանակությանը, Վ. Ի. Լենինը գրել է. «Բանվոր դասակարգը քաղաքացիական պատերազմի մեծ դաս ստացավ. պրոլետարիատի հեղափոխական դաստիարակությունը մեկ օրում այնպես առաջ գնաց, ինչպես այն չէր կարողանա գնալ գորշ, առօրյա, խղճուկ կյանքի ամիսների ու տարիների ընթացքում: Պետերբուրգի հերոսական պրոլետարիատի «մահ կամ ազատություն» լոզունգն այժմ արձագանքում է ամբողջ Ռուսաստանով մեկ» (Երկեր, հ. 8, էջ 106):

1905 թ. գարնան ու ամռան ամիսներին հեղափոխությունն արագորեն ծավալվեց ըստ լայնքի ու խորության: Մայիսին բանվորական գործադուլներն ընդգրկեցին գրեթե 200 քաղաքներ: Առանձնահատուկ նշանակություն ունեցավ Իվանովո-Վոզնեսենսկի բանվորների՝ 72 օր տևած գործադուլը, որը ղեկավարելու համար բանվորներն ստեղծեցին բանվորական դեպուտատների սովետ: Իվանովոյից հետո հեղափոխության ընթացքում սովետներ առաջացան նաև Պետերբուրգում, Մոսկվայում, Ռոստովում, Սարատովում, Բաքվում, Կիևում, Եկատերինոսլավում, Սևաստոպոլում, Կոստրոմայում, Չիտայում, Կրասնոյար-

նրա ղեկավար դերի իրականացման ձևերն ու եղանակները: Բոլշևիկները ստացան առաջին մեծ մարտական մկրտությունը: Այդ տարիներին բոլշևիզմի ընդհանուր զինանոցը հարստացավ մի շարք նոր դրույթներով ու սկզբունքներով, որոնք արտացոլվեցին կուսակցական փաստաթղթերում և Վ. Ի. Լենինի բազմաթիվ աշխատություններում:

Հեղափոխության ընթացքը ցույց տվեց, որ իմպերիալիզմի դարաշրջանում տեղի ունեցող ժողովրդական, այդ թվում և իրենց բնույթով բուրժուա-դեմոկրատական, հեղափոխությունների իսկական ղեկավար ուժը կարող է լինել միայն ու միայն պրոլետարական հեղափոխական կուսակցությունը, որ պրոլետարիատն առանց մարքսիստական կուսակցության դրոշի ներքո համախմբվելու և նրա անմիջական ղեկավարությամբ գործելու չի կարող իրականացնել իր ազատագրական միսիան՝ ազգային և միջազգային մասշտաբով: Հիրավի, ցարական ինքնակալության դեմ ժողովրդի մղած եռամյա մարտերի ավանգարդում ամենուրեք ընթանում էին բոլշևիկյան կուսակցության անդամները: Միայն բոլշևիկյան կուսակցությունն էր, որ մինչև վերջ նվիրված մնաց աշխատավոր մարդու գործին ու իղձերին և, կանգ չառնելով ոչ մի զոհաբերության առաջ, մարտնչում էր նրա ազատագրության համար: Այն ժամանակ, երբ «սոցիալիստ» մենշևիկներն ու ժողովրդի մյուս «բարեկամներն» իրենց համար միայն թաքստոցներ էին որոնում, բոլշևիկներն էին, որ բաց ճակատով պրոլետարիատին դրոշի տարան դեկտեմբերյան զինված ապստամբության օրերին և ցարական զորքի ու ոստիկանության դեմ մղվող բարիկադային կռիվներում հերոսական փառքով պսակեցին իրենց:

1905—1907 թթ. հեղափոխությունը դեպի մեծ Հոկտեմբերը տանող ռուսաստանյան բազմազգ պրոլետարիատի ազատագրական պայքարի փառապանծ ուղու կարևորագույն հատվածն է: Հեղափոխության տարիներին պրոլետարիատը և նրա մարտական առաջնորդը՝ բոլշևիկների լենինյան կուսակցությունն անցան քաղաքական պայքարի ուսանելի դպրոց և ձեռք բերեցին անգնահատելի փորձ: Վ. Ի. Լենինն ուղղակի նշել է, որ «Առանց այդպիսի «գըլխավոր փորձի», ինչպես 1905 թվականն էր, 1917 թ. հեղափոխությունը ինչպես բուրժուականը՝ Փետրվարյանը, այնպես էլ պրոլետարականը՝ Հոկտեմբերյանը, անհնարին կլինեին» (Երկեր, հ. 29, էջ 375):

Երեք տարվա հերոսական մարտերում բոլշևիկների լենինյան կուսակցությունն ամրապնդեց իր կապերը ժողովրդական լայն զանգվածների հետ և խոր ու կայուն արմատներ ձգեց բանվոր դասակարգի ու աշխատավոր գյուղացիության մեջ: Նա Անթեյի պես ամուր կապվեց իրեն սնող ուժի՝ ժողովրդի հետ, դարձավ պրոլետարիատի ամենամարտական և անպարտելի կուսակցությունը: «1905 թ. գարնանը,— գրել է Վ. Ի. Լենինը,— մեր կուսակցությունն ընդհատակյա խմբակների միություն էր. աշնանը նա դարձավ պրոլետարիատի միլիոնների կուսակցություն» (Երկեր, հ. 15, էջ 178):

Հեղափոխության տարիներին բոլշևիկների կուսակցությունը, բառիս լայն իմաստով, դարձավ Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատի ինտերնացիոնալ կուսակցություն:

Առաջին բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը միջազգային մեծ նշանակություն ունեցավ: Այն նոր ուժով ցույց տվեց, որ համաշխարհային հեղափոխական շարժման կենտրոնը փոխադրվել է Ռուսաստան, իսկ ռուսաստանյան պրոլետարիատը, բոլշևիկյան կուսակցության ղեկավարությամբ, դարձել է միջազգային հեղափոխական շարժման ավանգարդն ու հարվածային ուժը: Այն հսկայական ներգործություն ունեցավ համաշխարհային զարգացման պրոցեսի վրա, դրեց իմպերիալիզմի դարաշրջանի հեղափոխական փոթորիկների սկիզբը, հեղափոխական ու ազգային-ազատագրական ակտիվ պայքարի հանեց Եվրոպայի, Ասիայի, Լատինական Ամերիկայի շատ ժողովուրդների:

Ռուսական հեղափոխությունը ջերմորեն և մեծ ոգևորությամբ ընդունեցին Ֆրանսիայի, Գերմանիայի, Իտալիայի, Ավստրո-Հունգարիայի և մյուս երկրների սոցիալիստները, որոնք կոչ արեցին իրենց երկրների բանվորներին՝ կանգնել ռուսական հեղափոխության դրոշի ներքո: Այդ հեղափոխության ան-



միջական ազդեցության տակ բանվորական ընդհարումներ, ցույցեր, գյուղացիական ընդվզումներ տեղի ունեցան շատ երկրներում:

Ռուսաստանյան հեղափոխությունը բառիս լայն իմաստով արթնացրեց Արևելքը: Հենց նրա անմիջական ազդեցության տակ բուրժուական հեղափոխություններ բռնկվեցին Իրանում, Թուրքիայում և Չինաստանում: Հակաիմպերիալիստական ազգային-ազատագրական շարժումների նոր վերելք սկսվեց Հնդկաստանում, Աֆղանստանում, Ինդոնեզիայում և այլուր:

Իմպերիալիզմի դարաշրջանի առաջին հեղափոխությունը մարդկության սոցիալական առաջընթացի գործում ունեցավ այն նշանակությունը, որ նոր ուժով կյանքի կոչեց հասարակության դեմոկրատական վերափոխումների և քաղաքական ու սոցիալական ազատությունների պահանջները: Այն ցույց տըվեց, որ կապիտալիզմի «խաղաղ» զարգացմանը եկել է փոխարինելու քաղաքական ամենախոր ցնցումների և հեղափոխական ճակատամարտերի դարաշրջանը:

Յոթանասուն տարի առաջ սկսված ռուսաստանյան առաջին հեղափոխությունն արդեն պատմություն է, բայց նրա նշանակությունը տակավին մեծ է նաև մեր օրերում: Ռուսական պրոլետարիատի հեղափոխական պայքարի փորձն օգնում է ճիշտ ըմբռնելու արդի հեղափոխական պրոցեսների ընթացքը: «Մեր ժամանակներում,— նշված է «Ռուսաստանի 1905—1907 թվականների հեղափոխության 70-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— երբ միջազգային բանվոր դասակարգը ղեկավար դեր է նվաճում լայն ու հզոր համադեմոկրատական, հակաիմպերիալիստական շարժման մեջ, ռուսական առաջին հեղափոխության պատմական փորձը, աշխատավոր մասսաների հեղափոխական պայքարի մեջ պրոլետարիատի հեգեմոնիայի մասին լենինյան գաղափարներն առանձնահատուկ հրատապություն են ստանում»:

1905—1907 թթ. հեղափոխական մարտերով Ռուսաստանի բանվոր դասակարգը նախապատրաստեց 1917 թ. Հոկտեմբերը, որը մարդկության պատմության մեջ նոր դարաշրջանի՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանի սկիզբը դրեց:

Առաջին ռուսական հեղափոխության 70-ամյակը քաղաքական մեծ իրադարձություն է մեր երկրի աշխատավորների կյանքում: Սովետական մարդիկ, ըստ արժանվույն նշելով այդ տարելիցը, երախտագիտությամբ են հիշում այն հազարավոր ու տասնյակ հազարավոր հերոս մարտիկներին, որոնք իրենց կյանքը զոհաբերեցին հանուն մարդկության պայծառ ապագայի: Սովետական ժողովուրդը, որ լենինյան կուսակցության ղեկավարությամբ պատմական կարճ ժամանակամիջոցում կառուցեց զարգացած սոցիալիստական հասարակություն, այժմ հսկայական աշխատանք է ծավալել կոմունիզմի կառուցման համար:

Մեծ էր ռուսաստանյան առաջին ժողովրդական հեղափոխության համաշխարհային նշանակությունը: Անչափ մեծ է նաև սոցիալական առաջընթացի ուղիով մարդկության զարգացման վրա սոցիալիզմի առաջին երկրի պատմական նվաճումների ազդեցությունը, նվաճումներ, որոնք ձեռք են բերել 1905—1907 թթ. հեղափոխության բարիկադների վրա ընկած հերոսների սերունդները:

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՄԵԾ ՈՒԺԸ

## ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏԱՐՎԱ ԱՌԹԻՎ

Լ. Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆ
Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի
նախագահի տեղակալ

*1945 ԹՎԱԿԱՆԻ ՆՈՅԵՄԲԵՐ-ԴԵԿՏԵՄԲԵՐԻՆ Փարիզի հիմնադիր կոնգրեսում ստեղծվեց Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիան՝ ԿՄԴՖ-ն: Կոնգրեսի մասնակիցները հանդիսավոր երդում տվեցին պայքարել կանանց քաղաքական, տնտեսական, քաղաքացիական և սոցիալական իրավունքների համար: Այդ պահից անցել է երեսուն տարի, և այդ ժամանակամիջոցում նշանակալի հաջողություններ են ձեռք բերվել առաջադրված խնդիրների իրականացման գործում:*

*Ֆեդերացիան հանդես է եկել որպես միջազգային, ռեգիոնալ կոնգրեսների, զանազան սեմինարների, սիմպոզիումների հրավիրման նախաձեռնող և այլ հանդիպումների կազմակերպիչ: Այդ ամենը մեծապես նպաստել են իրենց իրավունքների, խաղաղության և սոցիալական առաջընթացի համար աշխարհի տարբեր երկրների կանանց մղած պայքարի հաջողությանը:*

*ԿՄԴՖ-ի նախաձեռնությամբ ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XXVII նստաշրջանը 1972 թ. որոշում ընդունեց 1975 թվականը հռչակել Կանանց միջազգային տարի (ԿՄՏ): Դիմելով աշխարհի պետություններին ու համաշխարհային հասարակայնությանը, ՄԱԿ-ը կոչ արեց 1975 թվականը դարձնել ԿՄՏ-ի հիմնական նպատակների իրագործմանն ուղղված համատեղ ակտիվ գործողությունների սկիզբ: Իսկ այդ նպատակները հետևյալներն են.*

*ա) հաստատել հավասարություն տղամարդկանց և կանանց միջև.*

*բ) ապահովել կանանց լայն մասնակցությունն իրենց երկրների տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացմանը.*

*գ) ճանաչել կանանց հարաճուն ավանդի կարևորությունը ժողովուրդների բարեկամական հարաբերությունների և փոխըմբռնման զարգացման, ամբողջ աշխարհի խաղաղության ամրապնդման գործում:*

*Որպես Տարվա անցկացման կենտրոնական թեմա ընդունվել է կանանց նկատմամբ խտրականությունը վերացնելու մասին ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի 1967 թվականի նոյեմբերի 7-ին ընդունած Դեկլարացիայի այն սկզբունքը, որ ինչպես տվյալ երկրի համակողմանի զարգացման, այնպես էլ ամբողջ աշխարհի բարեկեցության և համընդհանուր խաղաղության շահերը պահանջում են տղամարդկանց հետ հավասար՝ կանանց առավելագույն մասնակցությունը բոլոր բնագավառներում:*

*ԿՄՏ-ն նախապատրաստելու և անցկացնելու վերաբերյալ ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի նստաշրջանի որոշումը նպատակ ունի՝ խթանել պայքարը հասարակության մեջ կանանց դրությունը բարելավելու համար, կառավարությունների և հասարակական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրել մեր ժամանակի այդ կարևոր սոցիալական պրոբլեմի վրա:*

*Այդ պրոբլեմի նկատմամբ ուշադրությունը հիմնավորվում է մարդկության*



*պատմության զարգացման ողջ ընթացքում: Վերջին տասնամյակներին զգալիորեն աճել է կանանց դերը հասարակության տնտեսական և քաղաքական կյանքում: Այժմ կանայք իրենց աշխատանքով ստեղծում են աշխարհի ամբողջ ազգային հարստության մեկ երրորդը: Առավել նշանակալի է կանանց ավանդը սոցիալիզմի երկրներում:*

*Կանանց լայն ներգրավումը հասարակական արտադրության մեջ, հատկապես գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, սրել է հասարակության մեջ ու ընտանիքում կանանց դրության հետ կապված շատ պրոբլեմներ և ակտիվացրել է նրանց ելույթները՝ ի պաշտպանություն իրենց իրավունքների:*

*Հայտնի է, որ առաջադեմ հասարակայնության համառ պայքարի շնորհիվ, սոցիալիստական երկրների ակտիվ աջակցությամբ, ՄԱԿ-ը և նրա մասնագիտացված հաստատությունները (ԱՄԿ, ՅՈՒՆԵՍԿՕ և այլն) վերջին երկու տասնամյակներում ընդունել են մի շարք բանաձևեր, դեկլարացիաներ, կոնվենցիաներ, որոնք նպատակ ունեն հաստատել կանանց իրավահավասարություն: Դրանց թվին են պատկանում կանանց իրավունքների վերաբերյալ այնպիսի կարևոր փաստաթղթեր, ինչպիսիք են հավասար աշխատանքի համար հավասար վարձատրության մասին ԱՄԿ—100 կոնվենցիան, կանանց նկատմամբ խտրականությունը վերացնելու վերաբերյալ ՄԱԿ-ի դեկլարացիան և այլն:*

*Սակայն կանանց վերաբերյալ ընդունված կարևորագույն փաստաթղթերը չեն կենսագործվում աշխարհի ոչ սոցիալիստական պետությունների կողմից, չեն կատարվում նաև ազգային օրենսդրությունները կանանց իրավունքների մասին:*

*ՄԱԿ-ը, հռչակելով Կանանց միջազգային տարին, մի անգամ ևս կառավարությունների ուշադրությունը հրավիրեց կանանց նկատմամբ խտրականությունը վերացնելու մասին դեկլարացիայի, նրանց իրավունքների վերաբերյալ մյուս փաստաթղթերի սկզբունքները կենսագործելու, Տարվա հիմնական խնդիրներն իրականացնելու անհրաժեշտության վրա:*

*ՀԱՅՏՆԻ է, ՈՐ ԿԱՆԱՅՔ ԴԱՐԵՐ ՇԱՐՈՒՆԱԿ ԱԿՏԻՎ գործունեություն են ձգտել հասարակական կյանքում: Իրավունքներով տղամարդկանց հավասարվելու համար կանանց շարժումը (ֆեմինիզմը) ծագել է դեռևս բուրժուական հեղափոխությունների դարաշրջանում, երբ բուրժուազիան, պայքարելով իշխանության համար, հռչակեց մարդկանց ազատության և իրավական հավասարության լոզունգը: Իսկ իրականում բուրժուական ոչ մի հեղափոխություն բուրժուական պետության շրջանակներում կանանց իրավահավասարություն չի տվել և չէր էլ կարող տալ: Մարդկության ամենաառաջադեմ մտածողները միշտ հանդես են եկել կնոջ ամոթալի անիրավահավասարության դեմ և ուղիներ ու եղանակներ են որոնել նրա էմանսիպացիայի համար: Հանդես գալով կանանց իրավահավասարության պաշտպանությամբ, Ն. Գ. Չերնիշևսկին գրել է. «Ինչպիսի՜ հարստություն, ուժեղ, խորաթափանց մտքով է օժտված կինը բնությունից, և այդ միտքը մնում է առանց հասարակությանը օգուտ տալու. հասարակությունը մերժում է այն, ճնշում, խեղդում է նրան, մինչդեռ մարդկության պատմությունը տասն անգամ ավելի արագ կընթանար, եթե այդ միտքը չմերժվեր ու չսպանվեր, այլ գործեր»:*

*Սակայն կանանց անիրավահավասար ու ճնշված դրության իսկական պատճառը գիտականորեն բացահայտեց միայն պրոլետարիատի հեղափոխական ուսմունքը՝ մարքսիզմը: XIX դարի կեսերին Կ. Մարքսը գրել է, որ կանայք եղել են մարդկության առաջին ճնշված դասակարգը, պրոլետարական առաջին շահագործվող տարրը: Գիտական կոմունիզմի հիմնադիրներն ապացուցել են, որ կնոջ անիրավահավասար դրության արմատներն ընկած են հասարակության սոցիալ-տնտեսական պայմանների, արտադրամիջոցների մասնավոր սեփականության և մարդու կողմից մարդու շահագործման մեջ: Ուստի, չնայած տեխնիկայի հսկայական առաջընթացին, ժամանակակից հասարակության արտադրուժերի վիթխարի աճին, կանանց նկատմամբ խտրականությունը կապիտալիստական աշխարհի շատ երկրներում մեծ չափեր է ընդու-*

*մարդուն իսկապես հավասար դարձնելու համար հարկավոր է, որ հասարակական տնտեսություն լինի, և կինը մասնակցի ընդհանուր արտադրողական աշխատանքին։ Այն ժամանակ կինը կգրավի նույնպիսի դրություն, ինչպես տղամարդը» (Երկեր, հ. 30, էջ 33)։*

*Մեր երկրի բանվորների ու ծառայողների ընդհանուր թվի մեջ կանայք այժմ կազմում են 51 տոկոս։ Ավելին, կանայք այսօր մասնակցում են արտադրության բոլոր բարդ ոլորտներին, որոնք ունեն ժողովրդատնտեսական մեծ նշանակություն։ Ինժեներների ընդհանուր թվի մեջ կանայք կազմում են 33 տոկոս։ Բարձրագույն կրթություն ունեցող գյուղատնտեսների, զոոտեխնիկների, անասնաբույժների 40, իսկ տնտեսագետների 63 տոկոսը կանայք են։ Նրանք մեծամասնություն են կազմում նաև պետական, տնտեսական, կոոպերատիվ և հասարակական կազմակերպությունների կառավարման ապարատում։ Մինչդեռ հայտնի է, որ նախահեղափոխական Ռուսաստանում վարձով աշխատում էին միայն 2,5 մլն կանայք, ընդ որում՝ 80 տոկոսը տնային ադախիններ էին ու բատրակներ։*

*Տղամարդկանց և կանանց հավասարությունը սոցիալիզմի օրոք բոլորովին չի նշանակում տարբերակումների վերացում։ Որոշակի չափով տարբեր են տղամարդկանց և կանանց հակումներն ու շահերը։ Օրինակ, նախադպրոցական հիմնարկություններում, դպրոցներում, հիվանդանոցներում և կուլտուր-լուսավորական հիմնարկություններում կանանց գերակշիռ դիրքը պայմանավորված է, գլխավորապես, աշխատանքի բնույթով և պայմաններով, որոնք ամենից ավելի են համապատասխանում կնոջ նախասիրություններին։ Մեր երկրի իսկական ժողովրդական դեմոկրատիան ապահովում է կանանց լայն մասնակցությունը պետության կառավարմանը։ Վ. Ի. Լենինը համոզված էր, որ առանց քաղաքականության, պետության կառավարման մեջ կանանց ներգրավման չի կարելի նրանց դարձնել նոր հասարակարգի ակտիվ կառուցողներ, վերացնել անհավասարության հետքերը։*

*Լենինյան ցուցումները սրբությամբ կենսագործվեցին մեր երկրում։ Դրա վառ արտահայտությունն են հենց վերջին գումարման ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների արդյունքները։ Գերագույն սովետի երկու պալատներում ընտրվել են 475 կանայք, կամ դեպուտատների ընդհանուր թվի 31 տոկոսը։*

*Մեզ մոտ կանայք լայնորեն ներկայացված են նաև արդարադատության մարմիններում։ Բարձրագույն կրթություն ունեցող կին իրավաբանները կազմում են դրանց ընդհանուր թվի ավելի քան 30 տոկոսը։ Ժողովրդական դատավորների 34,6, իսկ ատենակալների 40,6 տոկոսը կանայք են։ Այսպիսով, տղամարդկանց և կանանց իրավահավասարությունը մեր երկրում դարձել է սովորական կյանքի նորմ, պետական քաղաքականության անբաժան մասը։*

*Մեծ, հիրավի, պատմական հաջողություններով են դիմավորում Միջազգային տարին սոցիալիստական երկրների կանայք։ Կոմունիստական և բանվորական կուսակցությունների ղեկավարությամբ, լայնորեն օգտագործելով Սովետական Միության փորձը, նրանք ակտիվորեն մասնակցում են պետական, տնտեսական ու կուլտուրական շինարարությանը։ Այդ բանում դրսևորվում է սոցիալիզմի օրինաչափությունների միասնությունը։*

*ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ ԿԱՆԱՆՑ ՀԱՐՑԻ ԼՈՒԾՄԱՆ դրական արդյունքներն ավելի ակնառու են Սովետական Միության մեջ միավորված ազգային հանրապետություններում, այդ թվում և Սովետական Հայաստանում։*

*Հայ կնոջ բախտը կանխորոշվեց այն ժամանակ, երբ 1917 թվականի Հոկտեմբերին հաղթանակած ռուս հեղափոխական պրոլետարիատն օգնության ձեռք մեկնեց նախկին ցարական Ռուսաստանի բոլոր ճնշված ժողովուրդներին։ Առավել առաջադեմ հայ կանայք, դեմոկրատական գաղափարների ազդեցության տակ, դեռ հեղափոխությունից առաջ գտել էին իրենց տեղը հասարակության մեջ. նրանք մասնակից էին Ռուսաստանի և Անդրկովկասի հեղափոխական բուռն իրադարձություններին և մարտնչում էին աշխատավորների ա-*



*զատության համար։ Նրանց թվում էին հայ ժողովրդի լեգենդար դուստրեր՝ Լուսիկ Լիսինյանը, Նինա Ալաջալովան, Վալյա Դրուժինինան, Փառանձեմ Կնունյանց-Ռիզելը, Ջավահիր Տեր-Պետրոսյանը, Օլգա Սպանդարյանը, Ֆլորա Վարդանյանը, Սուսաննա Շավերդովան և շատ ուրիշներ։*

*Սակայն մինչհեղափոխական Հայաստանի կանանց մեծ մասը գտնվում էր նահապետական կացութաձևի, ընտանեկան սովորությունների ու կրոնական հավատալիքների ճիրաններում. նրանք երազել անգամ չէին կարող քաղաքական կամ հասարակական իրավունքների մասին։ Կոմունիստական կուսակցությունը, սրբությամբ կատարելով Վ. Ի. Լենինի պատգամները, օգնեց ազգային հանրապետությունների կանանց՝ ձեռք բերելու իրենց մարդկային արժանապատվությունը, և լուծեց իրավունքներով նրանց տղամարդկանց հավասարեցնելու հարցը։*

*Անցած տասնամյակների ընթացքում մեր կանանց կյանքում տեղի ունեցած փոփոխություններն այնքան մեծ են, որ նույնիսկ դժվար է պատմել դրանց մասին։ Հայ կինն անցել է դժվարին ուղի՝ հետամնաց, անգրագետ գեղջկուհուց մինչև բազմաճյուղ կոլեկտիվ տնտեսության նախագահ, գլխավոր գյուղատնտես ու զոոտեխնիկը, ինժեները, կոնստրուկտորը, գործարանի դիրեկտորն ու ակադեմիկոսը, հասարակական կյանքի բոլոր երևույթների նկատմամբ անտարբեր տնային տնտեսուհուց մինչև պետական իշխանության գերագույն օրգանի ու կառավարության անդամը, կուսակցական ու սովետական ապարատի պատասխանատու աշխատողը։ Հայ կնոջ կյանքը, նրա հոգևոր աշխարհն այնքան են փոխվել, որ անցյալի հետ համեմատելն անգամ անիմաստ է։*

*Կանայք աշխատանքային մեծ ավանդ են ներդնում հանրապետության էկոնոմիկայի զարգացման գործում։ Ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվորների ու ծառայողների ընդհանուր թվի 44 տոկոսը կանայք են։ Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ մասնագետների թվում կանանց բաժինը կազմում է 50 տոկոս։ Գիտությունների կին դոկտորների և թեկնածուների թիվը հասնում է 1.700-ի։ Հետաքրքրական է նշել, որ հանրապետության մաթեմատիկական մեքենաների խոշորագույն գիտահետազոտական ինստիտուտում ստեղծագործական աշխատողների թվի 45 տոկոսը կանայք են։*

*Հանրապետությունում ձևավորվել է կին գրողների, ճարտարապետների, քանդակագործների, նկարիչների, կոմպոզիտորների, ժուռնալիստների, կինեմատոգրաֆիստների մի ստվար բանակ. նրանց ստեղծագործական աշխատանքով, հիրավի, հպարտանում է մեր ժողովուրդը։ Մեր տաղանդավոր դերասանուհիներից շատերն արժանացել են ՍՍՀՄ, Հայկական ՍՍՀ ժողովրդական և վաստակավոր արտիստի կոչման։ Մարդկանց առողջության հոգսը մեծ չափով ընկած է կանանց ուսերին, որոնք կազմում են աշխատող բժիշկների ընդհանուր թվի 71 տոկոսը։*

*Պետության կառավարման գործում հայ կնոջ ներգրավումը նրա քաղաքական լայն իրավունքների մի նոր վկայությունն է։ ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատների թվում են Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի բանվորուհի Գրիգելդա Գևորգյանը, Հոկտեմբերյանի շրջանի Նալբանդյան գյուղի կոլտնտեսության օղակավարուհի, սոցիալիստական աշխատանքի հերոս Գեղեցիկ Կարապետյանը, Վարդենիսի շրջանի Դաշքենդ գյուղի կոլտնտեսության ծխախոտագործուհի Ջեյնաբ Կուլիևան, Դիլիջանի «Իմպուլս» գործարանի բանվորուհի Քնարիկ Միրզոյանը, Երևանի Կրուպսկայայի անվան միջնակարգ դպրոցի ուսմասվար Ներիկ Դավթյանը և շատ ուրիշներ։*

*Մեր սոցիալիստական հասարակարգի ամենամեծ նվաճումներից մեկը պետական կարևորության աստիճանի բարձրացված հոգատարությունն է մայրության և մանկության նկատմամբ։ Դեռ 1921 թվականին Հայաստանի Ժողկոմսովետն ընդունել էր դեկրետներ հղի կանանց սոցիալական ապահովության, մանուկների ու կանանց կոնսուլտացիաների, կաթնախոհանոցների կազմակերպման մասին։ Այժմ հանրապետությունն ունի մանկական հիմնարկնե-*

րի խիտ ցանց։ Հիանալի դպրոցները, պիոներների պալատներն ու տները, ճամբարներն ու զբոսայգիները, մանկական տեխնիկական կայանները, մարզադաշտերն ու սպորտային դպրոցներն ապահովում են աճող սերնդի դաստիարակությունը։

Հղիության համար կանանց տրվող արձակուրդը, անվճար բժշկական օգնությունը և օրենսդրական ուրիշ շատ ակտեր ապահովում են մայրերի առողջության պահպանումը։ Մայր կանայք մեզ մոտ վայելում են համաժողովրդական հարգանք։ Միայն Հայաստանում «Հերոսուհի մայր» պատվավոր կոչումը կրում են 3 հազար կին, իսկ 243 հազար մայրեր պարգևատրված են մայրության համար ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով։ 1974 թ. նոյեմբերից սակավ ապահովված ընտանիքներ, ՍՍՀՄ կառավարության որոշման համաձայն, սկսեցին նպաստներ ստանալ երեխաների համար։

Ընթացիկ տարում սովետական ժողովուրդը և ամբողջ առաջադեմ մարդկությունը նշելու է գերմանական ֆաշիզմի դեմ տարած պատմական հաղթանակի 30-ամյակը։ Պատմությունը դեռ չի իմացել այնպիսի հերոսություն, որպիսին Հայրենական մեծ պատերազմում սովետական ողջ ժողովրդի հետ միասին ցուցաբերեցին մեր փառապանծ կանայք։ Իրենց քաջությամբ, համառությամբ ու համարձակությամբ նրանք տղամարդկանց հետ միասին պաշտպանեցին մեծ Հոկտեմբերի նվաճումները։ Թշնամու դեմ հաղթանակն ապահովելու համար ռազմաճակատներում արիաբար մարտնչում և թիկունքում անձնուրաց կերպով աշխատում էին հայ կանայք։

Պատերազմի ծանր ճամփաներով են անցել բժշկական ծառայության մայոր Ռոզա Ջանջուղովան, կապիտաններ Փառանձեմ Ավետիքյանը, Աշխեն Իգիթխանյանը, Ասյա Ամիրջանյանը, ավագ լեյտենանտ Ռուզաննա Լալայանը։ Ի դեպ, վերջին երկուսը Լենինգրադի պաշտպանության ակտիվ մասնակիցներ են եղել։ Մեր ժողովուրդը հպարտանում է իր քաջարի դուստրերով, ինչպիսիք են Քնարիկ Հարությունյանը, Վալենտինա Մսերյանը, Սոֆյա Սահակյանը, Վիկտորյա Մալաքյանը և շատ ուրիշներ։

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ, հաջողությամբ կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, հնգամյակի անցած տարիներին զգալի նվաճումների են հասել ժողովրդական տնտեսության, կուլտուրայի զարգացման և աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման գործում։ Հնգամյակի նախորդ տարիների համեմատությամբ առավել բարձր արդյունքների հասան նրանք հատկապես որոշիչ տարում՝ 1974 թվականին։

Այդ հաջողությունների մեջ, անշուշտ, իրենց բաժինն ունեն նաև մեր հանրապետության կանայք։ Մտնելով սոցիալիստական մրցության մեջ, նրանք ցուցաբերում են բարձր գիտակցականություն և աշխատանքային մեծ խանդավառություն, պայքարում իններորդ հնգամյակի եզրափակիչ տարվա առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։

Հանրապետության արտադրության առաջավորների թվում լայնորեն հայտնի են Քանաքեռի ալյումինի գործարանի ֆոլգագլանման արտադրամասի բանվորուհի Լենա Գալստյանի, Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի ջուլհակուհի, սոցիալիստական աշխատանքի հերոս Ծաղկանուշ Գալամահերյանի, Իջևանի գորգագործական կոմբինատի ջուլհակուհի Ռախսա Ժարկովայի, Լենինականի մսի ու պահածոների կոմբինատի բանվորուհի Սեդա Հովհաննիսյանի, Էջմիածնի շրջանի Աղավնատուն գյուղի կոլտնտեսության բրիգադավար, սոցիալիստական աշխատանքի հերոս Ռոզա Ավագյանի և շատ ուրիշների անունները. նրանք վաղուց արդեն կատարել են հնգամյակի իրենց առաջադրանքները։ Հայրենիքը բարձր է գնահատում և ըստ արժանվույն նշում կանանց ծառայությունները կոմունիստական շինարարության գործում։ Բավական է ասել, որ յուրաքանչյուր երրորդ պարգևը հանրապետությունում հանձնված է կանանց։ Սոցիալիստական աշխատանքի յուրաքանչյուր չորրորդը հերոս կին է։



ԿԱՆԱՆՑ ՀԱՐՑԻ ԼՈՒԾՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ մեր երկիրը վիթխարի նվաճումներ է ձեռք բերել։ Եվ, այնուամենայնիվ, կյանքը շարունակ նոր խնդիրներ է առաջադրում։ ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Կուսակցության քաղաքականության նպատակն այն է, որ սովետական կինը նոր հնարավորություններ ստանա թե՛ երեխաների դաստիարակության և թե՛ հասարակական կյանքին է՛լ ավելի մեծ չափով մասնակցելու համար, հանգստի և ուսման համար, կուլտուրայի բարիքներին է՛լ ավելի լայնորեն հաղորդակից լինելու համար» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 99)։

Կոմունիստական շինարարության գործում մեր հետագա հաջողությունները զգալի չափով կախված են լինելու կանանց աշխատանքից, կրթությունից, գիտելիքներից և կուլտուրական մակարդակից։ Գաղտնիք չէ, որ դեռևս ոչ բոլոր կանայք են կարողանում հասարակության ընձեռած հնարավորությունները հավասարապես օգտագործել իրենց պրոֆեսիոնալ և կուլտուրական աճի համար. կինը դեռևս շատ ժամանակ է վատնում տնային աշխատանքների վրա, ավելի շատ է ծանրաբեռնված տան, ընտանիքի, երեխաների դաստիարակության հոգսերով, քան տղամարդը։ Ուստի առաջին պլանի վրա է դրվում մի կարևոր խնդիր՝ կանայք պետք է ավելի լայնորեն մասնակից դառնան գիտատեխնիկական առաջընթացին, գիտելիքներ պահանջող որակյալ աշխատանքին, հասարակական կյանքին։ Մեզ թվում է, որ կարելի է կանանց ավելի լայնորեն ներգրավել ղեկավար աշխատանքներում. մեր հասարակարգի սոցիալ-տնտեսական պայմանները նպաստում են դրան։ Հարկավոր է, որ մինիստրությունները և գերատեսչությունները, ձեռնարկությունների, հիմնարկությունների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները, կուսակցական և հասարակական կազմակերպություններն իրականացնեն կոմպլեքսային միջոցառումներ կանանց աշխատանքի ու կենցաղի պայմաններն է՛լ ավելի բարելավելու համար։ Անհրաժեշտ է աշխատանք տանել՝ արագացնելու դպրոցների, մանկական հիմնարկությունների շինարարությունը, ինդուստրացնելու կենցաղային ծառայությունները, բարելավելու կենցաղի և հասարակական սննդի ձեռնարկությունների աշխատանքի որակը։ Հարկավոր է համակողմանի օգնություն ցույց տալ աշխատող կանանց՝ իրենց պրոֆեսիոնալ պատրաստությունը բարձրացնելու և աշխատանքն ուսման ու հանգստի հետ ավելի հաջող զուգակցելու հարցում, պետք է ավելի շատ ուշադրություն նվիրել կանանց բժշկական սպասարկումը բարելավելու և մայրության ու մանկության պահպանության մասին օրենսդրական բոլոր նորմերն անխախտ կիրառելու գործին։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆՈՒՄ, ԻՆՉՊԵՍ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մյուս երկրներում մեծ նշանակություն է տրվում Կանանց միջազգային տարվա անցկացմանը։ Այդ նպատակով երկրում ստեղծվել է 72 մարդուց բաղկացած հանձնաժողով։ Այն գլխավորում է ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահի առաջին տեղակալ Կ. Տ. Մազուրովը։ Հանձնաժողովի նախագահի տեղակալներն են ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Բ. Ն. Պոնոմարյովը և սովետական կանանց կոմիտեի նախագահ, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության անդամ Վ. Վ. Նիկոլաևա-Տերեշկովան։

Հանձնաժողովներ են ստեղծված նաև միութենական բոլոր հանրապետություններում։ Մեր երկրի համար Տարվա գլխավոր խնդիրն է՝ ընդհանրացնել կանանց հարցի լուծման գործում Սովետական Միության կուտակած փորձը, որն ունի միջազգային մեծ նշանակություն։

Սովետական ողջ ժողովրդի հետ միասին մեր հանրապետության կանայք մեծ գոհունակությամբ ընդունեցին կուսակցությանն ու սովետական ժողովրդին ՍՄԿԿ Կենտկոմի ուղղած դիմումը։ Այնտեղ ասված է. «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն դիմում է Ձեզ, սովետական կանայք։ Ձեր անձնվեր աշխատանքով, ընտանիքի, երեխաների նկատմամբ ձեր մայրական հոգատարությամբ դուք վաստակել եք ամբողջ հասարակության խորին երախտագիտությունն ու

հարցանքը։ Նոր տարին՝ 1975 թվականը ամբողջ մոլորակում նշվում է որպես կանանց տարի։ Էլ ավելի ակտիվ մասնակցեք հասարակական կյանքին, հայրենիքի բարօրության համար կատարվող ստեղծարար աշխատանքին»։

Ի պատասխան ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի, մեր կանայք 1975 թվականը կնշանավորեն ժողովրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի զարգացման գործում ձեռք բերած նոր հաղթանակներով։ Նրանք ամենաակտիվ մասնակցությունը կցուցաբերեն Կանանց միջազգային տարվա անցկացմանը և ցույց կտան բարձր կազմակերպվածության ու գործարարության օրինակ։

Անհրաժեշտ է օգտագործել բոլոր ուղիները՝ սոցիալիզմի առաջին երկրում կանանց հարցի լուծման փորձը լայնորեն ուրիշներին հաղորդելու, ժողովուրդների ինտերնացիոնալ կապերն ու բարեկամությունն ամրապնդելու համար։ Հարկավոր է նաև ուժեղացնել բարոյական և նյութական օժանդակությունը այն երկրների կանանց, որոնք պայքարում են իրենց իրավունքների, երեխաների երջանկության, ազատության, ազգային անկախության և սոցիալական առաջընթացի համար։

ՄԱԿ-ի տնտեսական և սոցիալական խորհուրդը Կանանց միջազգային տարվա կապակցությամբ հաստատել է միջոցառումների մի պլան, որով նախատեսված է անցկացնել սեմինարներ աշխարհի տարբեր շրջանների կանանց դրության վերաբերյալ։ 1975 թ. հուլիսին Մեքսիկայում տեղի կունենա ՄԱԿ-ի միջազգային կոնֆերանսը, որը ՄԱԿ-ի նման միջոցառումների մեջ կլինի հիմնականը։

Կանանց միջազգային տարվա հռչակումը հասարակայնության լայն հավանությանն արժանացավ նաև ոչ կառավարական այնպիսի կազմակերպությունների կողմից, ինչպիսիք են Խաղաղության միջազգային խորհուրդը, Արհմիությունների միջազգային ֆեդերացիան, Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների համերաշխության կազմակերպությունը, Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիան և այլ կազմակերպություններ։ Նրանք նույնպես անցկացնելու են հանդիպումներ, սեմինարներ, կոնֆերանսներ արդի շրջանում կանանց դրության տարբեր ասպեկտների վերաբերյալ։

Տարվա կենտրոնական իրադարձությունը կլինի հասարակական ուժերի կողմից հրավիրվելիք համաշխարհային կոնգրեսը, որը կայանալու է հոկտեմբերին, ԳԴՀ-ի մայրաքաղաք Բեռլինում։ Կոնգրեսը պետք է միավորի բոլոր երկրների կանանց ջանքերը և ամբողջ աշխարհին ցույց տա նրանց հաստատ մտադրությունը՝ հասնելու կանանց դրության և խտրականության վերացման հետ կապված հրատապ շատ պրոբլեմների լուծման։

Ողջ մոլորակի կանանց կյանքում խոշորագույն իրադարձության՝ Կանանց միջազգային տարվա, դեմոկրատիայի ու սոցիալիզմի, կանանց ազատության ու իրավահավասարության, ազգային անկախության, ողջ աշխարհի խաղաղության համար մղվող պայքարի պայմաններում է այս տարի երկրագնդի առաջադեմ հասարակայնությունը նշում Մարտի 8-ը՝ կանանց միջազգային օրը։

Կանայք այսուհետ ևս կձգտեն այն բանին, որպեսզի ավելի ակտիվ մասնակցություն ունենան իրենց դրության արմատական բարելավման, ինչպես նաև միջազգային լարվածության թուլացման, աշխարհում խաղաղության ամրապնդման և սոցիալական առաջընթացի համար մղվող պայքարին։

# ՀԱՆՃԱՐԻ ԱՌԱՋԻՆ ՓԱՅԼԱՏԱԿՈՒՄՆԵՐԸ

Հանճարը համբերժ է պրում:
Դ. ԴԻԴՐՈ

ԼՈՒՅՍ Է ՏԵՍԵԼ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԵՐԿԵՐԻ ԼԻԱԿԱՏԱՐ ԺՈՂՈՎԱԾՈՒԻ հայերեն առաջին հատորը։ Ստվարածավալ այս գրքում զետեղված են հեղինակի՝ 1893—1894 թվականներին հրապարակված հանրահայտ չորս աշխատությունները։ Դրանք են՝ Տնտեսական նոր շարժումներ գյուղացիական կյանքում, Այսպես կոչված շուկաների հարցի առթիվ, Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ, Նարոդնիկության տնտեսական բովանդակությունը և նրա քննադատությունը Պ. Ստրուվեի գրքում։

Հույժ բնորոշ և ուշագրավն այն է, որ բազմերեսամյա Լենինի դեռևս առաջին երկում ակնբախ են նրա մտածելակերպի մի քանի յուրահատկությունները. մարքսիստական մեթոդոլոգիայի հետևողական կիրառումը Ռուսաստանի պատմա-տնտեսական և սոցիալ-քաղաքական կյանքի մարզերում, խոր վերլուծությունից բխող հետևությունների ու ընդհանրացումների փաստարկումը վիճակագրական ծավալուն աղյուսակներով, հարցի համակողմանի ու կուսակցական ոգով տոգորված վերլուծությունը։ Վերջապես՝ տնտեսական և սոցիալական պրոցեսների, ռուսաստանյան գյուղում կապիտալիզմի տարածման բուն դինամիկայի գլխավոր նկրտումների պատմա-քաղաքական էության փայլուն բողազերծումը։

Խորապես հետազոտելով ռուսաստանյան գյուղի տնտեսական առօրյա վայրիվերումները՝ Լենինն իրեն հատուկ հստակ տրամաբանությամբ բացահայտեց «համայնատիրական» գյուղում վաղուց ի վեր արմատավորվող կապիտալիստական արտադրահարաբերությունների ակնհայտ ընթացքը, մարքսիստական դիալեկտիկայի սուր նշտարով հերձեց միջնադարյան գյուղի ներխող դիակը՝ ապացուցելով, որ համայնքի բուժումից օրնիբուն դուրս են թռչում կապիտալի թիթեռները, «սավառնում» ազատ շուկայի մթնոլորտում։ Քննադատելով նարոդնիկության ջատագովներին՝ Լենինը հետևողականորեն բացահայտեց ռուսական համայնքի մռայլ իրականությունը։

Պատմա-տնտեսական, վիճակագրական և այլ նյութերի վկայակոչմամբ Լենինը լիովին հերքեց ռուսական համայնքի վերաբերյալ հյուսված նարոդնիկական հետադիմական պատրանքը և միկրնդմիշտ հիմնավորեց կապիտալիստական ֆորմացիայի հունը բռնած Ռուսաստանի երթի անխուսափելիությունը։ Զեմստվային վիճակագրական հարուստ տվյալների դիալեկտիկական վերլուծմամբ, նա հանգեց գիտական այն եզրակացության, որ նարոդնիկության ապավեն համայնքը, փաստորեն, «միջնադարյան միջնորմի դեր է խաղում» և բնավ չի արդարացնում Ռուսաստանի ոչ կապիտալիստական ուղու նարոդնիկական կեղծ ժողովրդական պատրանքները, ըստ որոնց իբր թե անսասան են մնում գյուղում լայնորեն կիրառվող համկալական հնամենի աշխատանքային կոոպերացիայի այլևայլ եղանակները։

Այս հատորում զետեղված Այսպես կոչված շուկաների հարցի առթիվ Լենինի տնտեսագիտական-սոցիոլոգիական փայլուն մենագրությունը, որը տա-

ները պետք է ՎՃՌԱԿԱՆՈՐԵՆ ՈՒ ՎԵՐՋՆԱԿԱՆԱՊԵՍ կապերը խզեն քաղքենիական բոլոր գաղափարների ու տեսությունների հետ...», որովհետև դրանք ռեակցիոն են (էջ 258)։ Ծրագրային և ստեղծագործական թեզ չէ՞ նրա հետևությունը, թե Ռուսաստանի կոմունիստները, ելնելով իրենց երկրի զարգացման յուրահատկություններից, թող «իրենց գործունեության մեջ երբեք չմոռանան ԴԵՄՈԿՐԱՏԻԶՄԻ հսկայական կարևորության մասին» (էջ 362—363)։ Ստեղծագործական մարքսիզմի հիանալի օրինակ չէ՞ Լենինի այն հետևությունը, որ ազգերի գոյավորման շարժառիթներն սկզբնավորվում են ապրանքափոխանակության և կապիտալիստական հարաբերությունների վերընթացի ոլորտներում, ուստի «...ազգային կապերի ստեղծումը ոչ այլ ինչ էր, քան բուրժուական կապերի ստեղծում» (էջ 180)։ Ազգային «...ատելության գլխավոր հիմքը առևտրական ու արդյունաբերական բուրժուազիայի միանգամայն իրական շահերն են, և թե դատել ազգային զգացմունքի՝ իբրև ինքնուրույն գործոնի մասին, նշանակում է միայն կոծկել գործի էությունը» (էջ 180—181)։ Իսկ ի՞նչ է հետևում դրանից։ Այն, որ «...առանց փոխանակության վրա հիմնված տնտեսական կազմակերպությունը (այսինքն՝ կապիտալիզմը—Ա. Ա.) ոչնչացնելու անհնարին է միջազգային ընդհարումները դադարեցնել... ազգային ատելության դեմ պայքարելու այլ միջոց չկա, քան ամեն մի առանձին երկրում ճնշվածների դասակարգի կազմակերպումն ու համախմբումը՝ ճնշողների դասակարգի դեմ պայքարելու համար, քան այդպիսի ազգային բանվորական կազմակերպությունների միավորումը միջազգային մի բանվորական բանակի մեջ՝ միջազգային կապիտալի դեմ պայքարելու համար» (էջ 181)։

ՆՄԱՆ ԴԱՐԱԿԱԶՄԻԿ ԵՎ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ նշանակություն ունեցող շատ պրոբլեմներ է մշակել Լենինը վերոհիշյալ երկում։ Քսանչորսամյա Լենինի այդ մարգարեական եզրակացությունը մարդկության պատմության սոցիալիստական դարաշրջանի ազդարարումը եղավ։ Ահա նրա մարտաշունչ մանիֆեստի վերջին տողերը. «...ռուսական ԲԱՆՎՈՐԸ, բոլոր դեմոկրատական տարրերի գլուխ անցած ոտքի ելնելով՝ կտապալի միապետությունը և ՌՈՒՍԱԿԱՆ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻՆ (ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ պրոլետարիատի հետ կողք-կողքի) բացահայտ քաղաքական պայքարի ուղիղ ճանապարհով կառաջնորդի դեպի ՀԱՂԹԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆ» (էջ 377)։

Ռուսաստանյան հեղափոխական պրոլետարիատի կռիվը հաջողությամբ չէր պսակվի, եթե նա չունենար պատմության լոկոմոտիվի ղեկավար իր կուսակցությունը, որը Լենինի անմիջական գլխավորությամբ, համառ պայքար ծավալեց Ռուսաստանում առկա հակամարքսիստական հոսանքների տարատեսակությունների, մանրբուրժուական սոցիալիզմի ու օպորտունիզմի ոտնձգությունների դեմ։ Ահա թե ինչու նրա անվան հետ է առնչված մարքսիզմի զարգացման նոր և արգասալի փուլը Ռուսաստանում։ Այստեղ անհրաժեշտ է վկայակոչել ստեղծագործական մարքսիզմի նրա մեկ այլ դրույթ. «Սոցիալիստական մտավորականությունն այն ժամանակ միայն կարող է բեղմնավոր աշխատանքի հույս ունենալ, երբ վերջ կտա պատրանքներին ու կսկսի նեցուկ փնտրել Ռուսաստանի իրական և ոչ թե ցանկալի զարգացման մեջ, իրական և ոչ թե հնարավոր հասարակական-տնտեսական հարաբերությունների մեջ։ Ըստ այդմ նրա ՏԵՍԱԿԱՆ աշխատանքի նպատակը պետք է լինի Ռուսաստանում տնտեսական անտագոնիզմի բոլոր ձևերի կոնկրետ ուսումնասիրությունը, դրանց կապակցության ու հաջորդական զարգացման ուսումնասիրությունը, նա պետք է բացահայտի այդ անտագոնիզմն ամենուրեք, որտեղ այն քողարկված է քաղաքական պատմությամբ, իրավական կարգերի առանձնահատկություններով, սահմանված տեսական նախապաշարմունքներով...» (էջ 371)։ Եվ, վերջապես, ամփոփում է Վ. Ի. Լենինը, սոցիալիստական մտավորականությունը կոչված է ոչ միայն մատնանշելու աշխատավորության շահագործման և ունեզրկման անխուսափելիությունը կապիտալիստական հարաբերությունների օրոք, այլև ելք ցույց տալու այդ կարգերից (տե՛ս նույն տեղը)։

Այդ ելքը միայն սոցիալիստական հեղափոխությունն է, ինչպես դա ապացուցվեց մեծ Հոկտեմբերի հաղթանակով։ Իրականում, Ռուսաստանի սոցիա-



լիստական, ամենաառաջավոր մտավորականության ռահվիրա Լենինն ինքը լուծեց այդ կնճռոտ պրոբլեմը, ճիշտ այն մեթոդով, որի փայլուն շարադրանքը տեսնում ենք նրա երկերի առաջին հատորում։

Մարդկության պրոգրեսին Մարքսի մատուցած մեծագույն ծառայություններից մեկն էլ այն է, որ կապիտալիստական հասարակարգի նույն օբյեկտիվ վերլուծությամբ նա ապացուցում էր այն սոցիալիստականի վերածելու անհրաժեշտությունը (տե՛ս էջ 184)։ Կազմակերպելով սոցիալիստական հեղափոխության ղեկավար կոմունիստական կուսակցությունը՝ Լենինն այն զինեց մարքսիզմի գիտական գաղափարներով ապագան հեղափոխականորեն մոտեցնելու, կապիտալիզմի դեմ վերջնական հաղթանակ ապահովելու խոր հավատով։

Ուշագրավ է Լենինի սույն էական և ուղենիշ դրույթը. «Մատերիալիստները (մարքսիստները) առաջին սոցիալիստներն էին, որոնք առաջադրեցին հասարակական կյանքի ոչ միայն տնտեսական, այլև բոլոր կողմերի վերլուծության անհրաժեշտության հարցը...» (ընդգծումը մերն է—Ա. Ա.)։

Ըստ Լենինի այդ «բանը միանգամայն պարզ արտահայտվել է Կապիտալի մեջ և սոցիալ-դեմոկրատների տակտիկայում, համեմատած նախորդ սոցիալիստների հետ։ Մարքսն ուղղակի պահանջ էր դնում՝ չսահմանափակվել տնտեսական կողմով»։ Այս առթիվ Մարքսը գրել է Ռուգեին. «Սոցիալիստական սկզբունքն իր ամբողջությամբ ներկայացնում է, այնուամենայնիվ, մի կողմը միայն... Իսկ մենք պետք է նույնպիսի ուշադրություն դարձնենք մյուս կողմի վրա ևս, մարդու տեսական գոյության վրա, հետևապես, մեր քննադատության առարկան պետք է դարձնենք կրոնը, գիտությունը և այլն...» (էջ 189)։

ԳՐԱԽՈՍՎՈՂ ԼԵՆԻՆՅԱՆ ԱՅՍ ՀԱՏՈՐԸ, Լենինի վիթխարի գրական ժառանգությունը, ՍՄԿԿ գաղափարական հարուստ գործունեությունն արտացոլող և պատմական նշանակություն ունեցող բազմահատոր երկերն ու փաստաթղթերի ժողովածուները, վերջապես՝ աշխարհի բոլոր տեսաբան կոմունիստների առաջավոր գաղափարների ծավալուն պրոպագանդան վաղուց են ապացուցել, որ լենինյանները մեծ ջանադրությամբ են կատարել Կ. Մարքսի վերոհիշյալ պատգամը և փայլուն հասումներ ունեն նաև հոգևոր մարզում։ Հիրավի, սոցիալիստական ուղիով ընթացող ժողովուրդների հոգևոր կուլտուրան այժմ աշխարհի առաջավոր մարդկանց ինտելեկտուալ սնունդի և գաղափարական հպարտության անսպառ ու հոգեպարար աղբյուր է դարձել։

Անհերքելի ճշմարտություն է, որ XX դարի մարդկության հոգևոր առաջընթացի բոլոր ոլորտներում ակնբախ է Լենինի գրական ժառանգության անջնջելի դրոշմը։ Մարքսիզմ-լենինիզմի գաղափարների տարածումը և ծլարձակումն աշխարհով մեկ դրա վառ ապացույցն են։ Ահա նրա ծրագրային խոհերից լոկ մի քանիսը, որոնք հիմնավորապես շարադրված են Լենինի Երկերի լիակատար ժողովածուի սույն հատորում։

Լենինն այստեղ գրել է, թե Մարքսն ու Էնգելսը դիալեկտիկական են անվանել սոցիոլոգիայի գիտական մեթոդը, ըստ որի՝ հասարակությունը կենդանի, մշտապես զարգացող օրգանիզմ է և ոչ թե մեխանիկորեն միացված մի հանրություն (տե՛ս էջ 193)։ Սոցիալական էվոլյուցիան Լենինի հայեցակետով ոչ այլ ինչ է, եթե ոչ «հասարակական-տնտեսական ֆորմացիաների զարգացման բնապատմական պրոցես» (էջ 194)։ Լենինն ուսուցանում է, որ մարքսիստ հետազոտողի ելակետը ոչ թե գաղափարն է, այլ «միայն արտաքին, օբյեկտիվ երևույթը։ Քննադատության էությունն այն պետք է լինի, որ տվյալ փաստը համեմատվի ու առադրվի ոչ թե գաղափարի, այլ ուրիշ փաստի հետ...» (էջ 195)։ «Ավելի խոր վերլուծությունը,— կարդում ենք այս հատորում,— ցույց է տալիս, որ սոցիալական օրգանիզմները նույնպես խորապես տարբերվում են իրարից, ինչպես կենդանիների ու բույսերի օրգանիզմները» (էջ 196)։ Մարքսիստ հետազոտողը կոչված է պարզաբանելու «...այն առանձնահատուկ (պատմական) օրենքները, որոնք կարգավորում են տվյալ հասարակական օրգանիզմի ծագումը, գոյությունը, զարգացումն ու մահը և նրա փոխարինվելն ուրիշ, ավելի բարձր օրգանիզմով» (նույն տեղը)։

Այս աշխատության էջերում Լենինը քանիցս անդրադարձել է դասակար-

գային կավի էության մարքսիստական ըմբռնմանը՝ որպես գիտական սոցիալիզմի հանգուցային հարցերից մեկի: Նա տարբեր առիթներով շեշտել է, որ ով անտեսում է դասակարգային պայքարի անխուսափելիությունը և դրա որոշիչ դերը հասարակական կյանքում, նա բացարձակորեն չի ըմբռնել մարքսիզմը: Սակայն Լենինը միաժամանակ պատեհ առիթներով նշել է, որ իսկական մարքսիստը նա է, ով դասակարգային կռիվը հասցնում է մինչև պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը:

Իր ողջ կյանքի ընթացքում Լենինն անդուլ պրոպագանդել ու զարգացրել է մարքսիստական այն դրույթը, որի համաձայն «...մատերիալիզմն իր մեջ պարունակում է, այսպես կոչված, կուսակցականություն՝ պարտավորեցնելով դեպքի ամեն մի գնահատականի ժամանակ ուղղակի ու բացորոշ կանգնելու հասարակական որոշ խմբի տեսակետի վրա» (էջ 507—508):

ԿՐՔՈՏ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ՊՐԱԿՏԻԿԱՅՈՒՄ, հետևողական ու սկզբունքային կուսակցականություն՝ թեորիայում: Մարքսիզմ-լենինիզմի ծրագրային այս ըմբռնումով է բնորոշ եղել աշխարհի մեծագույն մարքսիստի՝ Լենինի տեսական ու պրակտիկ աշխարհաշեն վիթխարի գործունեությունը: Այս առումով հին աշխարհի դեմ մղվող համապարփակ իր պայքարում Լենինը, միշտ հավատարիմ մնալով Մարքսին, եղել է աշխարհի ամենաինքնուրույն, ամենախոր մտածողը, որը նողկանք էր տածում այն ամենի հանդեպ, ինչ դոգմատիկական է, ինչ հակասում է մատերիալիստական դիալեկտիկային: Ահա ինչու նա գրել է. «Մենք բնավ Մարքսի տեսությունը չենք համարել ինչ-որ ավարտուն և անձեռնմխելի մի բան. ընդհակառակը, մենք համոզված ենք, որ այն միայն հիմնաքարերն է դրել այն գիտության, որը սոցիալիստները պարտավոր են բոլոր ուղղություններով առաջ մղել, եթե նրանք չեն ցանկանում ետ մնալ կյանքից: Մենք կարծում ենք, որ ռուսական սոցիալիստներին հատկապես անհրաժեշտ է Մարքսի թեորիայի ինքնուրույն մշակումը, որովհետև այդ տեսությունը միայն ընդհանուր ղեկավար սկզբունքներն է տալիս, որոնք կիրառվում են մասնավորապես Անգլիայի նկատմամբ այլ կերպ, քան Ֆրանսիայի, Ֆրանսիայի նկատմամբ այլ կերպ, քան Գերմանիայի, Գերմանիայի նկատմամբ այլ կերպ, քան Ռուսաստանի» (տե՛ս ПСС, т. 4, стр. 184):

Այս իրո՛ք գիտական, իրո՛ք ստեղծարար ոգով են համակված հանճարեղ Լենինի խորաթափանց մտքի ո՛չ միայն առաջին փայլատակումները (որոնք զետեղված են առաջին հատորում), այլև նրա բոլոր երկերը, որոնց լիակատար ժողովածուն մոտակա տարիներին մայրենի լեզվով կստանա հայ ընթերցողը:

ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՄԱՐՔՍԻԶՄԻ ԿԵՆԴԱՆԻ ՄԱՐՄՆԱՑՈՒՄ է այս հատորում զետեղված Նարոդնիկության տնտեսական բովանդակությունը և նրա քննադատությունը պ-ն Ստրուվեի գրքում աշխատությունը: Բանավեճային այս երկում Լենինն իր տրամաբանության ուժով ու խայթող սարկազմով քննադատեց «լեգալ մարքսիզմի» պարագլուխ պ. Ստրուվեին, որը տնտեսագետ Տուգան-Բարանովսկու և այլոց հետ բավական ջանքեր վատնեց մարքսիզմը համակերպելու լիբերալ բուրժուազիայի հակումներին: Շուտով Ստրուվեի համակիրները հրաժեշտ տալով մարքսիզմին, մեկընդմիշտ զինվորագրվեցին ռուսական լիբերալ բուրժուազիայի բանակին: Այստեղ արդեն առանց քողքենիական սեթևեթանքի Ստրուվեն հանդես եկավ իբրև կապիտալիզմի անսքող ջատագով, ազդարարելով՝ «Խոստովանենք մեր անկուլտուրականությունը և գնանք սովորելու կապիտալիզմից» (П. Струве. **Критические заметки к вопросу об экономическом развитии России**, СПб, 1894, стр. 288).

Չկարողանալով դիմակայել մարքսիզմի հաղթարշավին Ռուսաստանի բանվորական շրջաններում, «լեգալ մարքսիստները», որոնք ըստ էության ռևիզիայի էին ենթարկում մարքսիզմը, սկսեցին հեղափոխական պրոլետարիատի գաղափարաբանությունը զոդել կանտականության հետ: Ահա այս առթիվ է Լենինը նկատել, որ ինչպես մանր արտադրողն է ձուլվում բուրժուազիային, այնպես էլ մանր արտադրողի գաղափարախոսն է ձուլվում լիբերալ



բուրժուազիային (տե՛ս հ. I, էջ 487): Այս երկում Լենինը մերկացրեց Ստրուվեի՝ մարքսիզմը հեղափոխականությունից զրկելու ճիգերը: Շրջանցելով կապիտալիզմի դասակարգային հակամարտությունների անհաշտելիությունը, պրոլետարիատի առջև ծառացած սոցիալիզմի կենսաթրթիռ խնդիրները՝ Ստրուվեն իր գրքում հավակնում էր հերքել «ներդաշնակ» կապիտալի անկասելի ներհակությունները:

Մերկացնելով պ. Ստրուվեի դարանամուտ ռևիզիոնիզմի վտանգավոր էությունը, Լենինը վարպետորեն ապացուցեց նրա հայացքների սնանկությունը պետության, գերբնակչության, ներքին շուկայի հարցերում, ինչպես և հիմնիվեր խափանեց նեոկանտականության ռեակցիոն փիլիսոփայության հարսնախոսությունը մարքսիզմի հետ:

Այսպիսով, տակավին XX դարի շեմին, մարքսիզմի՝ իրեն հատուկ խորիմացությամբ, պրոլետարիատի մեծ ստրատեգ ու տեսաբան Լենինը ուսուցում էր, որ մարքսիզմի «անհաղթելի գրավիչ ուժը, որով նա հրապուրում է բոլոր երկրների սոցիալիստներին, հենց այն է, որ նա միացնում է խիստ ու բարձրագույն գիտականությունը (հանդիսանալով հասարակական գիտության վերջին խոսքը) հեղափոխականության հետ և միացնում է ոչ թե պատահաբար, ոչ թե այն պատճառով միայն, որ դոկտրինայի հիմնադիրն անձամբ իր մեջ միացնում էր գիտնականի ու հեղափոխականի հատկությունները, այլ միացնում է բուն իսկ տեսության մեջ ներքուստ ու անխզելիորեն» (էջ 412):

Պատմությունը ցույց տվեց, որ Լենինը ևս սքանչելիորեն իր «մեջ միացնում է գիտնականի ու հեղափոխականի հատկությունները», մի մարդ, որի հանճարի առաջին փայլատակումները հրապարակված են նրա երկերի լիակատար ժողովածուի այս հատորում:

Լենինի Երկերի լիակատար ժողովածուի հրապարակումը հայերեն, պատմա-քաղաքական ակնբախ իրադարձություն է, որը վկայում է մեր կուսակցության կտրած փառավոր ուղու ճշմարտացիությունը, նրա գաղափարական-քաղաքական հասունությունը:

* * *

Այժմ մի քանի դիտողություններ.

1. Ցավալի է, որ լույս տեսած հատորում չեն հիշատակված թարգմանիչների անունները: Մինչդեռ, Վ. Ի. Լենինի Երկերի թարգմանությունը սովետական քաղաքացու համար ոչ միայն ստեղծագործական վարպետության դրսևորում է, այլև քաղաքացիական պարտքի հատուցումը հեղափոխության անմահ առաջնորդի մեծագործությունների նկատմամբ, ապա ուրեմն շնորհակալ ծառայություն հարազատ ժողովրդի հոգևոր վերածնության:

Կարծում ենք, որ սա էական պակասություն է:

2. Հայտնի է, որ մինչև օրս մարքսիզմ-լենինիզմի դասականների բոլոր երկերը, այդ թվում և Լենինի Երկերի 4-րդ հրատարակության հատորները լույս են տեսել գիտական ընդունված սկզբունքով, հեղինակի այլևայլ լեզուներով վկայակոչած աղբյուրները տպագրվել են ըստ բնագրի: Սակայն հայերեն տվյալ հրատարակությունում այդ սկզբունքը խախտված է, որի հետևանքով Լենինին հայերեն ընթերցողը զրկվում է նրա վկայակոչած աղբյուրներին բնագրով ծանոթանալու հնարավորությունից: Այսպես, օրինակ, հայ ընթերցողը չի՞ ապակողմնորոշվում, երբ կարդում է հետևյալ ցիտումները.

Ս. Ա. Կորոլենկո, «Ազատ վարձու աշխատանքը», ՍՊբ, 1892 (էջ 395):

«Նյութեր մեր տնտեսական զարգացման բնութագրման շուրջը» ժողովածու, ՍՊբ, 1895 (էջ 419):

Ն. Կարիշև. Գյուղացիական արտաբաժնեհողային վարձակալությունները: Դորպատ, 1892, էջ 122, 133 և այլն:

Հմմտ. «Ուրվագծեր տեսական քաղաքատնտեսության», ՍՊբ, 1895, էջ 257—258:

«Կապիտալ», հ. II (1885), էջ 93 (էջ 557): (Նշված են ռուսերեն հրատարակության էջերը):

Կ. Մարքս, «Կապիտալ», հ. I, 1955, էջ 752—753 (էջ 720):

Հակագիտական այս մեթոդը հնարավորություն ընձեռո՞ւմ է ընթերցողին նշված լեզվով գտնելու այդ աղբյուրները, ընթանալու հեղինակի հետքերով և խորացնելու իր գիտելիքները: Անշուշտ, ոչ:

| | |
|---|---|
| «...այնպես էր ստացվում, թե երբ մարդիկ գիտակցաբար են կառուցում հասարակական հարաբերությունները» (էջ 158)։ | դուրս է գալիս, թե երբ մարդիկ իրենց հասարակական հարաբերություններն ստեղծում են գիտակցաբար. |
| «...երբև հասարակության կառուցվածք...» (էջ 159)։ | երբև հասարակության ստրուկտուրա. |
| «...Մարքսի արած հսկայական քայլը դեպի առաջ...» (էջ 166)։ | Մարքսի կատարած հսկայական առաջընթաց քայլը. |
| «Մեղմացումները մասամբ տրված էին գրաքննական նկատառումներով» (էջ 682)։ Բնագրում՝ были сделаны» (стр. 166). | Մեղմացումները մասամբ արված էին. |
| «...ժամանակավոր համաձայնություն է կնքում նրանց հետ...» (էջ 784)։ | ժամանակավորապես համաձայնվում է նրանց հետ. |
| «Սրանից ի՞նչ է հետևում, բացի նրանից, որ կան մարդիկ...» (էջ 191)։ Բնագրում՝ «Что отсюда следует, кроме того, что есть люди....» (стр 163). | Սրանից ի՞նչ է հետևում, լոկ այն, որ կան մարդիկ. |
| «...դեմ էին առնում այն փաստին...» (էջ 158)։ | բախվում էին այն փաստին. |
| «...նատուրալ ձևը...» (էջ 97)։ | բնաձևը. |
| «...չէր դրդում, որ հասարակական միջամտություն տեղի ունենա գործին» (էջ 209)։ | չէր դրդում, որ հասարակական միջամտություն լինի գործին. |
| «...հարաբերությունները բուրժուական են ստացվում» (էջ 261)։ Բնագրում՝ «...оказываются буржуазными» (стр. 220). | հարաբերությունները բուրժուական են. նախորդ հրատարակության առաջին հատորում թարգմանված է՝ բուրժուական են դուրս գալիս, որը նրմանապես անհաջող է (էջ 201). |
| «...նա փորձից խելքի եկած...» (էջ 325)։ Բնագրում՝ «умудренного опытом» (стр. 270). | փորձով իմաստնացած. |
| «...խրախուսի դեպի բարին ուղղված ամեն մի ակտիվ փորձ» (էջ 324)։ | պետք է խրախուսի յուրաքանչյուր ակտիվ բարեխնդիր փորձ. |
| «...Մարքսն ասում է, որ պ. Միխայլովսկին իրավունք չուներ իր մեջ Ռուսաստանի առանձնահատուկ զարգացման գաղափարի հակառակորդ տեսնելու...» (էջ 329)։ | Մարքսն ասում է, որ պ. Միխայլովսկին իրավունք չուներ իրեն՝ Մարքսին, Ռուսաստանի յուրահատուկ զարգացման գաղափարի հակառակորդը համարելու. |
| «...վիթխարի քայլ դեպի առաջ...» (էջ 331)։ | վիթխարի առաջընթաց. |
| «Դուք այնպես վախեցաք այս սոսկալի մեղադրանքից սոցիալիզմի մեջ...» (էջ 338)։ | Դուք այնպես վախեցաք սոցիալիզմի՝ ձեր իրր հարելու այս սոսկալի մեղադրանքից. |
| «...դեպի ձեզ ունեցած բարեհաճությունից...» (էջ 349)։ | ձեր հանդեպ (կամ նկատմամբ) ունեցած բարեհաճությունից. |
| «...աջակցության կնանդիպի...» (էջ 361)։ | կարժանանա աջակցության, աջակցություն կըստանա, աջակցություն կգտնի. |
| «...այժմու հողագործության մինիստրը...» (էջ 362)։ | հողագործության ներկա մինիստրը, արդի մինիստրը, այժմյան մինիստրը. |
| «...աշխատավորներին «սառը ամբոխի» դրությանն են իջեցնում...» (էջ 364)։ | աշխատավորներին «սառը ամբոխի» վիճակում են դնում. |
| «...դառնում է պատերազմ ոչ թե անհատի, այլ դասակարգի դեմ...» (էջ 375)։ | դառնում է կռիվ ոչ թե անհատի, այլ դասակարգի դեմ. |
| «...մեր կապիտալիզմը չի բերում բանվորական շարժում» (էջ 401)։ | մեր կապիտալիզմը բանվորական շարժում չի հարուցում. |
| «Պ-ըն Ստրուվեն մեղադրվում է «անպատշաճ եղանակներ» գործածելու համար...» (էջ 406)։ | Պ-ըն Ստրուվեն մեղադրվում է «անպատշաճ գրելաոճեր» գործածելու կամ կիրառելու համար. |
| «...խիստ ճետաքրքիր դարձնել գիրքը...» (էջ 423)։ | խիստ հետաքրքրական դարձնել գիրքը. |
| «...կարևոր է այն տեսակետը, որով արվում է քննադատությունը» (էջ 423)։ | կարևորը քննադատության տեսակետն է. |
| «...մեջ գցելով դրանց հետ...» (էջ 424)։ | խճճելով կամ.խճճելով դրանց հետ. |
| «...մեր վերաբերմունքը դեպի նարոդնիկությունը...» (էջ 425)։ | մեր վերաբերմունքը նարոդնիկության նկատմամբ, վերաբերյալ, հանդեպ և այլն. |
| «Առաջ գնանք հեղինակի ճետևից» (էջ 428)։ | հեղինակի հետ առաջ ընթանանք. |
| «...խոստովանում իր սերը դեպի ժողովուրդը...» (էջ 436)։ | խոստովանում է իր սերը ժողովրդի հանդեպ. |
| «...մասսան առաջվա նման ճարբեցողության կտա իրեն...» (էջ 450)։ | մասսան առաջվա պես կկոնծարանի. |
| «...այս ճասկացության տակ մտնում են թե՛ գյուղացին և թե՛ տնայնագործը» (էջ 501)։ | այս հասկացությունը ներառնում է և՛ գյուղացուն, և՛ տնայնագործին. |
| «...ֆորմացիան է բովանդակություն տալիս այդ պրոցեսին...» (էջ 508)։ | ֆորմացիան է այդ պրոցեսին բովանդակություն հաղորդում. |
| «Այստեղ է նա գործի դնում իր ավելորդ բնակչությունը...» (էջ 534)։ | Իր ավելորդ բնակչությունն օգտագործում է այստեղ. |
| «Նա... ընկնում է... օբյեկտիվ պատմարանների սխալի մեջ» (էջ 541)։ | նա կրկնում է օբյեկտիվ պատմարանների սխալը. |
| «...ամեն մի աշխատանք՝ արտադրության ինչ նյութի վրա էլ այն ծախսված լինի» (էջ 767)։ | արտադրության որ ճյուղում էլ այն ծախսված լինի. |
| «Տարածված հայացքը երբեք չի տվել այդ հարցերի պատասխանը, փոխանակությունը դիտելով որպես ինչ-որ պատահականություն և ոչ թե որպես տնտեսության որոշ սիստեմ։ Այնուհետև, տարածված հայացքը երբեք չի տվել այն բանի բացատրությունը, թե որտեղից և ինչ կերպ է ծագել մեր կապիտալիզմը...» (էջ 99)։ | Տարածված հայացքը՝ փոխանակությունը համարելով ինչ-որ պատահականություն և ոչ իբրև տնտեսության որոշակի սիստեմ, բնավ չի պատասխանել այդ հարցերին։ Այնուհետև, տարածված հայացքը երբեք չի բացատրել այն, թե որտեղից և ինչպես է ծագել մեր կապիտալիզմը։ |
| «...ասելով, թե տնտեսությունը չի կարելի մեղադրել նրա ծագման համար» (էջ 192)։ | ասելով, թե չի կարելի տեսությանը մեղադրել իր ծագման համար. |
| «Դուք այդ մարդկանց կճանաչեք թե՛ հատուկ հագուստից, թե՛ սանձարձակ վարք ու բարքից և թե՛ որևէ տիկնոջ վրա, որ խնդրում է չծխել...» (էջ 474)։ Բնագրում՝ «Вы узнаете этих людей и по особому костюму, и по крайней бесцеремонности обращения, и по резкому гоготанью над какой-нибудь барыней, которая просит не курить...» (стр. 391). | վարք ու բարքից հետո կարգալ՝ և թե որևէ աղնըվազարմ տիկնոջ վրա խստորեն հռհռալուց, որը խնդրում է չծխել. |

Այսպիսով, պարզ երևում է, որ Վ. Ի. Լենինի Երկերի թարգմանության և խմբագրման դըժվարին, պատասխանատու գործում շատ անելիքներ կան։ Ցանկանք հաջողություն այդ ստեղծագործական ոլորտում։

Ա. Գ. ԱԴՈՅԱՆ

# ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐՆԵՐԸ

## ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՈՒՂԻՈՎ

Ի. Դ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՅԻ ստեղծման արդի փուլում, հզոր ինդուստրիայի հետ մեկտեղ, զարգանում է բազմաճյուղ գյուղատնտեսությունը, որի բարձր արտադրողականության ապահովումը համաժողովրդական կարևոր խնդիր է։ Գյուղատնտեսության հանրային սեկտորից, ինչպես և գյուղատնտեսական հումքից ստացված մթերքներն ու արդյունաբերական արտադրանքը բավարարում են ժողովրդական սպառման պահանջների ավելի քան երեք քառորդը։ Վ. Ի. Լենինը նշել է, որ «առանց ամուր գյուղատնտեսական բազայի, անհնար է որևէ տնտեսական շինարարություն» (Երկեր, հ. 31, էջ 640)։

Ալմա-Աթայում խոպանի յուրացման 20-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում արտասանած ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, խոսելով կուսակցության լենինյան ագրարային քաղաքականության մասին, նշեց. «Սովետական հասարակության՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ժամանակաշրջան թևակոխելը հատկապես ակնհայտ դարձրեց անհամապատասխանությունը սոցիալիստական արդյունաբերության, կուլտուրայի, գիտության ու տեխնիկայի բուռն աճի և գյուղատնտեսության ետ մնալու միջև... Այս ամենը կուսակցության և նրա Կենտրոնական կոմիտեի վրա հատուկ պատասխանատվություն էր դնում, մեզանից պահանջում մշակել ագրարային այնպիսի քաղաքականություն, որն ապահովեր գյուղատնտեսության հաստատուն վերելքը, գյուղատնտեսական աշխատանքի բնույթի վերափոխումը... գյուղի բուն կերպարանքի վերափոխումը» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 4, էջ 597)։

Մեր երկրի գյուղատնտեսության հետագա վերելքի բնագավառում նոր փուլ նշանավորեց ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումը, որը կարևոր միջոցառումներ մշակեց ժողովրդական տնտեսության այդ ճյուղի հետագա զարգացման վերաբերյալ։ «ՍՍՀՄ գյուղատնտեսության հետագա զարգացման անհետաձգելի միջոցառումների մասին» զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց այն վիթխարի կարևորությունը, որ ունի գյուղատնտեսությունը կոմունիզմի հաջող կառուցման համար։ Գյուղատնտեսությունը,—ասաց նա,—պետք է դնել տնտեսական ամուր հիմքերի վրա, խելամտորեն օգտագործել արտադրության զարգացման բարոյական և նյութական ազդակները (տե՛ս Լենինյան կուրսով, հ. I, էջ 93)։

Կուսակցության Կենտկոմի մարտյան պլենումը ՍՄԿԿ ագրարային քաղաքականության նոր փուլի սկիզբը հանդիսացավ և վճռական դեր խաղաց հանրային գյուղատնտեսության արտադրաուժերի հետագա զարգացման համար։ Պլենումը նշեց կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի կոմպլեքսային զարգացման ուղիները, ընդգծելով դրանց նյութատեխնիկական բազայի ամրապնդման անհրաժեշտությունը։ Գյուղատնտեսության հետագա առաջընթացը պահանջում է մասնագիտացնել ու համակենտրոնացնել կոլտնտեսությունների և սովխոզների արտադրությունը, ստեղծել ագրոարտադրական կոմպլեքսներ, կատարելագործել աշխատավորների բարոյական և նյութական խրախուսման, գյուղատնտեսական մթերքների մթերման ու գնման ձևերը, էլ ավելի ամրապնդել բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքը։



Կոմունիստական կուսակցությունը պայքարի հանեց սովետական ժողովրդին՝ լուծելու դժվարին մի խնդիր, այն է՝ հմտորեն օգտագործել տնտեսության սոցիալիստական պլանավորման առավելությունը և հաղթահարել գյուղատնտեսության ետ մնալը։

Երկրի գյուղատնտեսության ինտենսիվացման հարցին մեծ ուշադրություն նվիրեցին կուսակցության XXIII և XXIV համագումարները, ինչպես նաև ՍՄԿԿ Կենտկոմի՝ դրանց հաջորդած պլենումները։ Համագումարների և Կենտկոմի պլենումների որոշումները դարձան սովետական մարդկանց, գյուղի ողջ աշխատավորների գործունեության ծրագիր։

Գյուղատնտեսությունը գիտականորեն պլանավորելու, կոլտնտեսային դեմոկրատիան ամրապնդելու, արտադրության տեխնիկական բազան հզորացնելու, գյուղի աշխատավորության նյութական և անձնական շահագրգռվածությունը բարձրացնելու միջոցով կուսակցությունը հասավ այն բանին, որ գյուղատնտեսությունը դրվեց զարգացման կայուն հիմքերի վրա։ Մեր երկրի գյուղատնտեսությունն այժմ ունի ավելի քան 4,5 մլն տրակտոր (15 ձիաուժի հաշվով), 650 հազար հացահատիկային կոմբայն, 1.250 հազար բեռնատար ավտոմեքենա և շատ այլ մեքենաներ։

Միայն իններորդ հնգամյակի առաջին 3 տարիներին գյուղատնտեսությունը ստացել է շուրջ մեկ մլն տրակտոր, 600 հազար բեռնատար և մասնագիտացված ավտոմեքենա. վաճառվել են 8,3 մլրդ ռուբլու գյուղատնտեսական գործիքներ։ Զարգացած սոցիալիստական ինդուստրիայի շնորհիվ կուսակցությունն ապահովել է գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի վերակառուցումը և պայմաններ ստեղծել տեխնիկական հագեցվածության անշեղ աճի համար։ Սոցիալիստական գյուղատնտեսությունը 1940 թ. արդյունաբերությունից ստացել է 84 տեսակի մեքենաներ և գործիքներ, 1970 թ.՝ 724, իսկ իններորդ հնգամյակի վերջին տարում այդ թիվը կանցնի 1.500-ից։ Առաջիկա տարիներին մեր երկրի գյուղատնտեսությունը կստանա ավելի կատարելագործված, հզոր ու արագընթաց գյուղատնտեսական մեքենաներ։

Այսպիսով, տարեցտարի կատարելագործվում ու նորանում է գյուղատնտեսության ինդուստրիալ բազան։ Աշխատապրոցեսների մեքենայացման շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը, նախասովետական շրջանի համեմատությամբ, ներկայումս աճել է գրեթե 5, իսկ գյուղատնտեսության արտադրանքը՝ ավելի քան 3 անգամ։

Պապենական արորի ու սայլի փոխարեն Հայաստանի կոլտնտեսություններում այժմ աշխատում են 9 հազար տրակտոր, 9 հազար բեռնատար ավտոմեքենա, 1.700 հացահատիկային կոմբայն, մեծ թվով գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ։ 1971—1973 թթ. գյուղատնտեսության զարգացմանը հատկացված պետական կապիտալ ներդրումները հանրապետությունում կազմել են 430 մլն ռուբլի։ Կոլտնտեսություններն ու սովխոզները ստացել են ավելի քան 4.300 տրակտոր, մոտ 4.500 բեռնատար ավտոմեքենա, 480 կոմբայն և 845 հազար տոննա պարարտանյութ։ Մեքենայացումը հնարավորություն ընձեռեց ընդարձակել ցանքերն ու այգիները, բարձրացնել բերքատվությունը, ավելացնել հանրային անասունների գլխաքանակն ու մթերատվությունը։ Ակնհայտ են մեքենայական աշխատանքի առավելությունները։ Արարատյան դաշտի պայմաններում միայն այգեբաց կատարող մեքենան փոխարինում է 25 կոլտնտեսականի աշխատանքի։ Նույնքան արդյունավետ են նաև շարահերկ կուլտուրաների դաշտերը մշակող, քաղհանիչ և տասնյակ այլ մեքենաներ։ ՍՄԿԿ Կենտկոմի պահանջով վերակառուցվում են երկրի գյուղատնտեսական մեքենաշինության գրեթե բոլոր գործարանները. այս միջոցառումը կավելացնի գյուղատնտեսական մեքենաների թողարկումը։

Հողը համաժողովրդական հարստություն է, գյուղատնտեսության հիմնա-

կան արտադրամիջոցը։ Այդ պատճառով էլ կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը բազմաթիվ միջոցներ են գործադրում պահպանելու հողը, բարձրացնելու նրա բերքատվությունը, յուրաքանչյուր հեկտարից հանելու էլ ավելի մեծ արդյունավետության։ Այդ նպատակով մեծ ուշադրություն է նվիրվում հողերի մելիորացիային, էրոզիայի դեմ պայքարին, պարարտացման գործին։ Ութերորդ հնգամյակի վերջին տարում ՍՍՀՄ-ում հանքային պարարտանյութերի արտադրությունը մեկ հեկտարի հաշվով, 1965 թ. համեմատությամբ, աճել էր 1,2 անգամ, իսկ ընթացիկ հնգամյակում այն կավելանա ևս 1,6 անգամ։

Փորձը ցույց է տալիս, որ հանքային պարարտանյութի յուրաքանչյուր ցենտներ հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը հեկտարից բարձրացնում է առնվազն 2, շարահերկ կուլտուրաներինը՝ 8—12, բազմամյա և միամյա կերաբույսերինը՝ 4—5 ցենտներով։ Գյուղատնտեսական արտադրության քիմիացումը գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման՝ ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած ծրագրի կարևորագույն բաղկացուցիչ մասն է։ Այդ մարզում արդեն որոշակի աշխատանք է տարվել։ 1967—1973 թթ. հնարավոր եղավ գործարկել 43 մլն տոննա հանքային պարարտանյութերի արտադրական նոր կարողություններ, որոնք գերազանցում են ութերորդ հնգամյակի սկզբին երկրում եղած բոլոր համանման կարողությունները։ Գյուղատնտեսությունն արդյունաբերությունից ստանում է ոչ միայն հանքային պարարտանյութեր, այլ նաև բույսերի պաշտպանության քիմիական տարբեր միջոցներ, անասնապահության համար խտացրած բազմատեսակ կեր, մեծ քանակությամբ վիտամիններ, դեղորայք և այլն։ Կերի հետ անհրաժեշտ չափով քիմիական նյութերի օգտագործումն ապահովում է անասունների և թռչունների լրացուցիչ 20—30 տոկոս քաշաճ, ավելացնում մթերատվությունը։

ՍՄԿԿ Կենտկոմը 1973 թ. մարտին քննարկեց երկրում հանքային պարարտանյութերի արտադրության հնգամյա պլանի կատարման ընթացքը։ Նշելով հաջողությունները, Կենտկոմը համապատասխան կազմակերպություններին հանձնարարեց 1973—1975 թթ. ձեռնարկել լրացուցիչ միջոցներ՝ խթանելու հանքային պարարտանյութերի արտադրության զարգացումը, արագացնելու ձեռնարկությունների կառուցումն ու վերակառուցումը, այն հաշվով, որ այս տարի հանքային պարարտանյութերի արտադրության ծավալը հասցվի 90, իսկ 1980-ին՝ ավելի քան 120 մլն տոննայի։

Գյուղատնտեսական կուլտուրաների բարձր և կայուն բերք ապահովելու գլխավոր նախապայմաններից մեկը հողերի մելիորացիան է, որը հողի բերրիության բարձրացման հզոր և տևական գործոնն է։ ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1966 թ.) պլենումը քննարկեց հացահատիկային և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բարձր ու կայուն բերքի ստացման համար հողերի մելիորացիան լայնորեն զարգացնելու վերաբերյալ հարցը և մշակեց մելիորացման տասնամյա վիթխարի ծրագիրը։ Պլենումը նշեց, որ սոցիալիստական գյուղատնտեսության ինտենսիվացման հիմքը գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացումն է։ Այն մի շարք միջոցառումներ ձեռնարկեց, որոնցով նախատեսվում էր ստեղծել ջրովի հողագործության նոր, խոշոր շրջաններ, չորացնել գերխոնավ և մշակել աղակալած հողերը, բարելավել բնական կերահանդակները, պայքարել հողմահարության ու էռոզիայի դեմ, հիմնել դաշտապաշտպան անտառաշերտեր և այլն։ Կուսակցության Կենտկոմի որոշմամբ հողերի մելիորացման համար գյուղատնտեսությանը տրամադրվեցին կապիտալ խոշոր միջոցներ, հզոր տեխնիկա (էքսկավատորներ, բուլդոզերներ, գրեյդերներ և այլ մեքենաներ)։ Երկրում մեծ թափով ծավալվեցին ջրանցքների ու ջրհան կայանների կառուցման, ոռոգման սիստեմի ընդարձակման, ճահճային տարածությունների չորացման, գետերի, լճերի և աղբյուրների ջրերի նպատակասլաց օգտագործման աշխատանքները։ Վերջին տարիներին գյուղատնտեսության մեջ լայնորեն օգտագործվում են ինքնագնաց ջրցանը, ինչպես նաև անձրևող մեքենաները, հեռաշիթ կայանքները, օդանավերը և այլ հարմարանքներ։ ՍՄԿԿ Կենտկոմի 1966 թ. մայիսյան պլենումից հետո



(մինչև 1974 թ.) իրացվել էին 7,1 մլն հեկտար ոռոգելի և ցամաքեցված նոր հողեր։ Ջրատնտեսական կազմակերպությունների կարողությունները մեծացել են 2,5 անգամ, ստեղծվել են շինարարական ինդուստրիայի խոշոր ձեռնարկություններ, կրկնապատկվել է մելիորատիվ մեքենաների հավաքակայանը։ Ջրատնտեսական կազմակերպություններում աշխատում են մեկ միլիոնից ավելի բանվորներ ու մասնագետներ։

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը մեծ ներդրումներ կատարեցին խամ ու խոպան հողերի յուրացման համար։ Այդ միջոցները տալիս են իրենց պտուղները։ Յուրացված նախկին խամ ու խոպան հողատարածություններից ստացվող հացահատիկի տարեկան համախառն միջին բերքը, 1949—1953 թթ. 22,7 մլն տոննայի փոխարեն, 1969—1973 թթ. հասել է 71,7 մլն տոննայի։ Վերջին 20 տարում այդ տարածություններից ստացվել է ավելի քան 31 մլրդ փութ հացահատիկ։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանի ջրաշինարարական աշխատանքների համար ներդրվեց ավելի քան 200 մլն ռուբլի, որից շուրջ 100 միլիոնը՝ 1966—1973 թվականներին։ Այժմ գյուղատնտեսությանը ոռոգման ջուր են մատակարարում միջտնտեսային և ներտնտեսային ավելի քան 1.640 ջրանցք, 192 պոմպակայան և 42 ջրամբար։ Այդ խոշոր միջոցառումների շնորհիվ, նախասովետական տարիների համեմատությամբ, ոռոգելի հողատարածություններն ընդարձակվեցին ավելի քան 4 անգամ, ջրարբիացվեց ավելի քան 250 հազար հեկտար արոտավայր։

Հայաստանում որոշակի աշխատանք է տարվում արտեզյան, գրունտային և աղբյուրների ջրերը ևս ոռոգման համար օգտագործելու ասպարեզում։ Սակայն միշտ և ամենուրեք չէ, որ հողային տարածությունները, տեխնիկան, հանքային պարարտանյութերը, ոռոգման ջուրը նպատակային են օգտագործվում։ Ամեն տարի Հայաստանում, զանազան պատճառներով, ոռոգելի հողերի 10—14 տոկոսը և վարելահողերի մի մասը չեն մշակվում։ Բացի այդ, միշտ չէ, որ ոռոգվող հողերից բարձր բերք են ստանում։ Այսպես, 1972 թ. մեր հանրապետությունում բանջարեղենի մեկ հեկտարի միջին բերքը կազմել է 214, իսկ Արտաշատի, Հոկտեմբերյանի, Մասիսի, Արարատի շրջաններում՝ 220—270 ցենտներ, մինչդեռ Աբովյանի, Աշտարակի, Ապարանի, Ազիզբեկովի և Իջևանի շրջանների ջրովի հողերում ստանում են ընդամենը 20—120 ցենտներ։ Ջուրը անխնամ օգտագործելու մասին ամենայն սրությամբ խոսվեց ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում։ Այնտեղ ուղղակի ասվեց, թե ոռոգիչ ցանցերի անտերության և վատ վիճակի հետևանքով հանրապետությունում ամեն տարի չեն ոռոգվում 30—40 հազար հեկտար ցանքեր և բազմամյա բույսեր։

Սոցիալիստական գյուղատնտեսության վերելքն արագացնելու համար, 1972 թ. հոկտեմբերի վերջերին ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը որոշում ընդունեցին «Հողերի մելիորացման աշխատանքներն էլ ավելի ուժեղացնելու և ոռոգելի ու չորացված հողերի օգտագործումը բարելավելու մասին»։ Կուսակցության ու կառավարության այդ միջոցառումները որոշակիորեն արագացրին մելիորացման աշխատանքների կազմակերպման տեմպերը։ Արագ թափով են ընթանալու Կախովկայի, Հյուսիսային Ղրիմի, Սարատովի, Ստավրոպոլի, Կույբիշևի և մյուս ջրանցքների շինարարական աշխատանքները։ ՍՍՀՄ ժողտնտեսության զարգացման հեռանկարային պլանով նախատեսվում է կենսագործել ավելի խոշոր միջոցառումներ։

ՍՄԿԿ XXIV համագումարի ընդունած բանաձևում իրավացիորեն նշված է, որ «Կուսակցության և ժողովրդի գործունեության կարևոր արդյունքն են գյուղատնտեսության զարգացման լուրջ հաջողությունները» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 259)։ Եթե ութերորդ հնգամյակում հացահատիկի տարեկան համախառն արտադրանքը, միջին հաշվով, կազմեց 167,6 մլն տոննա, ապա իններորդ հնգամյակի առաջին երեք տարում, չնայած 1972 թ. ցածր բերքին, այդ թիվը հասավ 190,6 մլն տոննայի։ 1973 թ. երկրում հեկտարի միջին բերքը կազմեց 17,6 ցենտներ։ Որոշակի աճեց բրնձի, բամբակի և անասնապահական մթերքների արտադրությունը։ Նման առաջընթացը կատարվեց համաժողովրդական սոցիալիստական լայն մրցության ծավալմամբ, գյուղա-

տնտեսության առաջավորների փորձի ագրոնոմիական գիտության ու տեխնիկայի նվաճումների կիրառմամբ, խրախուսանքի բազմապիսի միջոցների կենսագործմամբ։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսված է իններորդ հնգամյակի վերջին տարում բամբակի հումքի արտադրությունը հասցնել 7—7,2 մլն տոննայի։ Կուսակցության անհրաժեշտ ձեռնարկումների շնորհիվ, գյուղատնտեսության աշխատողների հերոսագործություններով հնարավոր եղավ հայրենիքի առաջադրանքը գերակատարել ժամկետից երեք տարի շուտ՝ արդեն 1972 թ. արտադրել 7,3, իսկ 1974-ին՝ ավելի քան 8,4 մլն տոննա բամբակ։

Գյուղում կուսակցության վարած քաղաքականության կարևոր արդյունքներից է արտադրության մասնագիտացումը, ինչպես և միջտնտեսային արտադրամիավորումների ու ձեռնարկությունների ցանցի ընդլայնումը, որը նպաստում է տեխնիկայի առավել ռացիոնալ օգտագործմանը, համեմատաբար պակաս կապիտալ ներդրումներով՝ ավելի մեծ արդյունքների ստացմանը։

Քիչ չեն նաև մեր հանրապետության հաջողությունները։ Հայաստանի գյուղատնտեսությունը ներկայումս գրեթե 9 անգամ շատ բանջարեղեն, 4 անգամ ավելի ծխախոտ, կրկնակի շատ միս ու կաթ է արտադրում, քան մինչպատերազմյան տարիներին։ Չնայած 1973 թ. բնակլիմայական աննպաստ պայմաններին, հանրապետությունում հացահատիկի միջին բերքը հեկտարից կազմեց 17,3 ցենտներ։ Որոշակի էր հանրապետության գյուղի աշխատավորների հաջողությունները 1974 թվականին՝ հնգամյակի որոշիչ տարում։ Սակայն գյուղատնտեսության վարման գործում դեռևս կան լուրջ թերություններ։ ՀԿԿ Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումը նշեց, որ մեր հանրապետությունում թերակատարվում են իններորդ հնգամյակի առաջադրանքները։ Աշխատանքի արտադրողականության աճը գյուղատնտեսության մեջ թերակատարվեց 11 տոկոսով։ Հայկական ՍՍՀ-ում հողագործության և անասնապահության վարման կուլտուրայի մակարդակը շարունակում է մնալ ցածր։ Հնգամյակի անցած չորս տարում պետությանը պակաս է տրվել 155 հազար տոննա խաղող և 39 հազար տոննա պտուղ։

Վերջին տարիներին հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների մի մասում կրճատվում են խաղողի այգիների տարածությունները, իջնում է բերքատվությունը։ ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումն անհանդուրժելի համարեց, որ հանրապետությունում խաղողի այգիների նոսրությունը կազմում է 20 տոկոս, պտղատու այգիներինը՝ ավելի քան 16 տոկոս։

Արդյունաբերության ու գյուղատնտեսության ասպարեզում սովետական ժողովրդի ձեռքբերումներն ունեն ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական նշանակություն։ Այդ նվաճումների շնորհիվ է՛լ ավելի հզորացավ մեր երկիրը, ամրապնդվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։ ՍՄԿԿ XXIV համագումարը Կենտկոմի հաշվետվության առթիվ ընդունած բանաձևում նշեց, որ «գյուղատնտեսության վերելքը համաժողովրդական գործ է» և կուսակցական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին, արդյունաբերության, գյուղատնտեսության և գիտության աշխատողներին կոչ արեց «արագորեն կենսագործել գյուղատնտեսության արագ զարգացման կուսակցության նախանշած ծրագիրը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութեր, էջ 264)։ Այդ ծրագրի իրագործմանն ամենաակտիվ կերպով աջակցում է բանվոր դասակարգը, որը վճռական դեր է խաղում ոչ միայն արդյունաբերության, այլև գյուղատնտեսական արտադրության մեջ։ «Մեր էկոնոմիկայի ագրարային սեկտորում,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— զբաղված բանվորների ջոկատն իր մեջ ունի ավելի քան ինը մլն մարդ» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 654)։ Այդ թիվն առաջիկայում ավելի կաճի՝ գյուղատնտեսական աշխատանքն ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի վերածվելու տեմպերի արագացմանը զուգընթաց։

Կուսակցության ագրարային քաղաքականությունը նրա քաղաքական կուրսի կարևոր բաղադրատարրն է, որն ապահովվում է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի առավել ամրապնդումը, սոցիալիստական վերափոխումների իրականացումը։

# ՏՆՏԵՍԱՊԵՍ ՀԻՄՆԱՎՈՐԵԼ ՀԱՆՐԱՅԻՆ ՀՈՂՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ

Ն. Մ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ
Տնտեսական գիտությունների դոկտոր

ՍՍՀՄ հողային և ջրային օրենսդրությունների հաստատումից հետո մեր երկրում կենսագործվում է բնական ռեսուրսների պահպանման և ռացիոնալ օգտագործման մեծ ծրագիր։

Բնական ռեսուրսների պահպանման և շահագործման վիճակը մինչև վերջերս կանխորոշվում էր այդ ռեսուրսների անվճար լինելու մասին քաղաքատնտեսական սխալ կոնցեպցիայով, որը երկար ժամանակ տիրապետող էր ինչպես տեսության մեջ, այնպես էլ գործնականում։ Համառոտ՝ այդ կոնցեպցիայի հիմնական բովանդակությունը հետևյալն է. քանի որ հողը, ջուրը, ընդերքի բոլոր հարստությունները համաժողովրդական, պետական սեփականություն են և դրանց օգտագործումն անվճար է, ուստի սոցիալիստական պետությունն ուղղակի վարչական եղանակով կարող է կարգավորել հողօգտագործման հետ կապված բոլոր հարցերը։ Հասկանալի է, որ ըստ նման մոտեցման միանգամայն ավելորդ է բնական ռեսուրսների տնտեսական գնահատումը։ Այժմ հազիվ թե հարկ կա հերքել այդ պարզունակ և մակերեսային մոտեցումը, քանի որ արդեն լիովին ակնհայտ են դրա պատճառած վնասները։

Այս առումով սկզբունքորեն նոր էր ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. սեպտեմբերյան պլենումի դիրքորոշումը։ Ժողովրդական տնտեսության պլանավորման և տնտեսական խթանման նոր համակարգին անցնելը, հատկապես ֆոնդավճարի և տնտհաշվարկի սկզբունքների կիրառումը, օրակարգի հարց դարձրին նաև բնական ռեսուրսների, այդ թվում և հողի տնտեսական գնահատումը՝ այդ ռեսուրսների օգտագործումը նոր, տնտհաշվարկային սկզբունքներով կարգավորելու նպատակով։

Այժմ արդեն մեզանում աստիճանաբար հաղթահարվում է բնական ռեսուրսների անվճար, ձրի օգտագործման մասին թյուր պատկերացումը։ Շատերը, այնուամենայնիվ, հարցնում են. ի՞նչ միտք ունի բնական ռեսուրսների տնտեսական գնահատումը, եթե դրանք համաժողովրդական սեփականություն են, ենթակա չեն առք ու վաճառքի։ Բնական ռեսուրսների տնտեսական գնահատումն անհրաժեշտ է նախ՝ տվյալ երկրի ազգային հարստության մասին լրիվ պատկերացում ստանալու համար։ Հողը և բնական ռեսուրսները (ավելի ճիշտ, դրանց հետազոտված մասը) մտնում են ազգային հարստության մեջ, ուստի, եթե դրանք տնտեսապես գնահատված չեն, ապա երկրի ազգային հարստությունն արհեստականորեն պակաս ցույց կտրվի։

Երկրորդ. այս նույն առումով էլ պետք է ճշգրիտ հաշվարկվի, թե ի՛նչ ծավալի ու կազմի բնական հարստություններ է տնօրինում ամեն մի ձեռնարկություն (գյուղատնտեսական կամ արդյունաբերական)։ Այդպիսի հաշվառում անհրաժեշտ է նաև հասարակության ու յուրաքանչյուր ձեռնարկության միջև տնտհաշվարկային հարաբերությունների կարգավորման տեսակետից, մասնավորապես, ճիշտ որոշելու համար հասարակության առջև տվյալ ձեռնարկության տնտեսական պարտավորությունների չափը (իրացվող արտադրանքի գումարը, մթերման գների մակարդակը, եկամտահարկը և այլն)։

Երրորդ. հողի և բնական մյուս ռեսուրսների տնտեսական գնահատումը կարևոր է դրանց պահպանման ու նորմալ վերարտադրության հանրորեն անհրաժեշտ ծախսերի չափը որոշելու համար։ Սեղմ ասած, բնական ռեսուրսների հաշվենկատ օգտագործման ծախսերի որոշման համար հարկավոր է ամենից առաջ գնահատել այդ ռեսուրսները։ Եվ իսկապես, եթե հայտնի չէ հողի, ջրի կամ անտառային պաշարների գինը, ապա հնարավոր չէ որոշել նաև դրանց պահպանման և նորմալ շահագործման ծախսերի սահմանը։

Վիճակագրական տվյալների համաձայն, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության հիմնական արտադրաֆոնդերի ընդհանուր արժեքն այժմ 675 մլրդ ռուբլուց ավելի է։ Սակայն այս գումարի մեջ չի մտնում հողի և բնական այլ ռեսուրսների տնտեսական գնահատումը, որը կարևոր պայման է ժողովրդի բարեկեցության բարձրացման համար։

Ըստ սովետական տնտեսագետների ուսումնասիրությունների, ՍՍՀՄ բնական հարստությունների հիմնական տեսակների մասնագիտական (էքսպերտային) գնահատումը հետևյալ պատկերն ունի.

| | |
|---|---|
| Գյուղատնտեսական հողատեսքեր | 180—270 մլրդ ռուբ. |
| Անտառային պաշարներ | 45—50 » » |
| Օգտակար հանածոների պաշարներ | 70—100 » » |
| | Ընդամենը՝ 295—420 մլրդ ռուբ.[1] |

(Տե՛ս «Вопросы экономики», 1973, № 4, стр. 62)։

Բերված տվյալները, իհարկե, մոտավոր են, և, բացի դրանից, այդ հաշվարկի մեջ չեն մտել բնական ռեսուրսների որոշ տեսակներ, օրինակ՝ ջրի պաշարները և այլն։ Բնական ռեսուրսների տնտեսական գնահատման գումարի հիմնական մասն ընկնում է գյուղատնտեսական հողատեսքերին։ Հետաքրքրական է, որ գյուղատնտեսության մյուս բոլոր հիմնական արտադրաֆոնդերի (շենքեր, կառուցումներ, մեքենաներ, անասուններ և այլն) արժեքը չի անցնում 137 մլրդ ռուբլուց։ Այլ կերպ ասած, հողի՝ գյուղատնտեսության ամենագլխավոր արտադրամիջոցի, տնտեսական գնահատումը շուրջ երկու անգամ գերազանցում է գյուղատնտեսության հաշվարկած հիմնական արտադրաֆոնդերի գումարին։ Մեկնաբանությունները, ինչպես ասում են, ավելորդ են։

Բնական ռեսուրսների անվճար օգտագործման կոնցեպցիան քիչ չի վնասել ժողովրդական տնտեսությանը։ Մամուլում բավական տվյալներ են բերվել հանրային հողօգտագործման անմխիթար վիճակի, գյուղատնտեսության լավագույն հանդակների շռայլման, դուրս գրման և ոչ գյուղատնտեսական նպատակներով օգտագործման մասին։ ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումը կրկին անդրադարձավ այս կարևոր հարցին։ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Դեմիրճյանն իր զեկուցման մեջ մասնավորապես նշեց. «Չնայած այն բանին, որ ինչպես անցյալ, այնպես էլ ընթացիկ հնգամյակում նշանակալի միջոցներ են ծախսված նոր հողերի յուրացման վրա, այնուամենայնիվ, 1966—1973 թվականներին գյուղատնտեսական ընդհանուր հողատարածությունները նվազել են 17 հազար հեկտարով, այդ թվում վարելահողերինը՝ 6,6 հազար հեկտարով։ Հողը ռացիոնալ կերպով չի օգտագործվում։ Ցավոք, տակավին կան փաստեր, երբ զանազան կազմակերպությունների համար բերրի հողեր են հատկացվում ոչ գյուղատնտեսական նպատակներով։ Այդ նպատակների համար հատկացված 12 հազար հեկտար հողերի ավելի քան 53 տոկոսը եղել է բերքատու, իսկ մի մասն էլ՝ ոռոգելի։ Վատ է արդյունաբերական ձեռնարկությունների կողմից հողերի ռեկուլտիվացումը»։

Վատ ենք օգտագործում բնական մյուս ռեսուրսները ևս։ Ջրի կորուստը մեր հանրապետության ոռոգման սիստեմներում հսկայական է. դաշտ է հասնում ոռոգման աղբյուրներից վերցրած ջրի միայն կեսը։

1. Համեմատության համար նշենք, որ ԱՄՆ-ում հողի գինը 96,1 մլրդ դոլար է, իսկ մեկ ակրի հաշվով՝ 85,3 դոլար։



Վերը բերված փաստերն անվիճելիորեն հաստատում են այն իրողությունը, որ առանձին ձեռնարկությունների և գերատեսչությունների կողմից բնական ռեսուրսների անվճար, այսպես ասած, անհատույց օգտագործումը հանգեցնում է այդ ռեսուրսների վիթխարի շռայլումների։

Բնական ռեսուրսների տնտեսական գնահատումն օրգանապես կապված է այդ ռեսուրսների վճարովի օգտագործման պրոբլեմի հետ։ Այս կապակցությամբ հարց է ծագում՝ բնական ռեսուրսների, մասնավորապես հողի վճարովի օգտագործումը, արդյոք, հակասո՞ւմ է սոցիալիստական ագրարային հարաբերություններին։ Իրոք, մեր երկրում հողը ազգայնացված է, անվճար ու առհավետ տրված գյուղատնտեսական ձեռնարկություններին՝ կոլտնտեսություններին և պետական տնտեսություններին։ Ինչ վերաբերում է հողօգտագործմանը, այն տնտեսական իմաստով անվճար չէ ու չի էլ կարող լինել, ինչպես և ցանկացած բնական այլ ռեսուրսների օգտագործումը։ Այդ են վկայում ոչ միայն տեսական դրույթները, այլև գյուղատնտեսության մեջ ստեղծվող հավելյալ և հավելուրդային արդյունքի բաշխման վերաբերյալ իրական տվյալները։

Այսպես, վերջին տարիներին երկրի կոլտնտեսություններում ու սովխոզներում ստեղծվող հավելյալ արդյունքի շուրջ 71 տոկոսն անցնում է պետությանը՝ գյուղատնտեսական արտադրանքի մթերումների, մթերման գների, եկամտահարկի և շահույթներից մասհանումների միջոցով (տե՛ս «Вопросы экономики», 1973, № 4, էջ 61)։ Ընդ որում, մոտավոր հաշվարկները վկայում են, որ պետությանն անցնող զուտ եկամուտների հիմնական մասը բաժին է ընկնում հողային ռենտային։

Այսպիսով, կասկած չկա, որ սոցիալիստական պետությունն իր ձեռքում է կենտրոնացնում գյուղատնտեսության մեջ ստեղծվող հավելուրդային եկամուտների (դիֆերենցիալ ռենտայի) հիմնական բաժինը, դրանով իսկ իրացնում հողի սեփականատիրոջ իր իրավունքը։

Սակայն խնդիրն այն է, որ մինչև այժմ դիֆերենցիալ ռենտայի գոյացումն ու բաշխումը մեզ մոտ առանձին չեն հաշվարկվում. այդ կարգի եկամուտները, այսպես ասած, տարրալուծվում են գյուղատնտեսության զուտ եկամուտների ընդհանուր գումարի մեջ և գանձվում պետության օգտին։ Մինչդեռ տրնտեսապես նպատակահարմար է առանձին հաշվարկել և գանձել դիֆերենցիալ հողային ռենտան, զատելով այն միջին կամ, այսպես կոչված, օպտիմալ զուտ եկամտից։ Իսկ այդ խնդիրն իր հերթին պահանջում է հողի տնտեսական գնահատում և գյուղատնտեսական ձեռնարկություններից գանձվող պարտավորությունների կայուն չափի սահմանում՝ ռենտային վճարների կամ ռենտային հարկի ձևով։ Այսպիսով, հողօգտագործման անուղղակի վճարներից անհրաժեշտ է անցնել ուղղակի վճարներին, որոնք պետք է ունենան իրենց ինքնուրույն ձևը և կապված լինեն յուրաքանչյուր հողատեսքի եկամտաբերության, նրա բնական բերրիության հետ։ Դա մեծապես կպարզեցնի պետության ու գյուղատնտեսական ձեռնարկությունների տնտեսական փոխհարաբերությունները, ինչպես նաև պլանավորող ու ղեկավարող մարմիններին հնարավորություն կընձեռի հանրային հողօգտագործումը կարգավորելու համար ունենալ տնտեսական մի կարևոր լծակ, որը ներկայումս բացակայում է[1]։

***

Հանրային հողօգտագործումը տնտհաշվարկային, այսինքն՝ վճարելիության հիմքերի վրա դնելու անհրաժեշտությունն ակնհայտ է հողօգտագործման միջճյուղային հարաբերությունների կարգավորման ասպարեզում, մասնավորապես այն դեպքերում, երբ հարկ է լինում հողեր հատկացնել ոչ գյուղատնտեսական նպատակներով։ Նման հատկացումների ժամանակ կատարված շռայլումներով առանձնապես աչքի է ընկնում մեր հանրապետությունը։ Հողի

1. Մեր տնտեսագիտական գրականության մեջ այս հարցը առավել հետևողականորեն հիմնավորված է մասնավորապես Վ. Շկրեդովի (տե՛ս նրա «Социалистическая земельная собственность», М., 1967), և Լ. Կասսիրովի կողմից (տե՛ս «Вопросы экономики», 1973, № 4)։

տնտեսական գնահատման բացակայությունը բացասաբար է անդրադառնում
արդյունաբերական, տրանսպորտային, ջրաշինարարական և ուրիշ օբյեկտնե-
րի նախագծման ու տնտեսական հիմնավորման հարցերի վրա։

Այստեղ չենք թվարկի մեծ ու փոքր այն օբյեկտները, որոնք կառուցվել,
կամ նախագծվում և կառուցվում են առանց հատկացվող գյուղատնտեսական
հանդակների «արժեքի» հաշվառման։ Նշենք միայն, որ մինչ այժմ նախագծա-
յին և շինարարական կազմակերպությունները չունեն այդ հարցի վերաբերյալ
միասնական մեթոդիկա։ Էկոնոմիկայի գիտահետազոտական կազմակերպու-
թյուններն ինչպես հարկն է չեն մասնակցում գեթ խոշոր արդյունաբերական
կամ բնակարանային շինարարության օբյեկտների նախագծերի տնտեսական
հիմնավորմանը։ Հանրապետությունում ստեղծվել է հակասական մի իրավի-
ճակ, երբ մի կողմից հսկայական միջոցներ են հատկացվում նոր հողերի յու-
րացմանն ու ոռոգմանը, մյուս կողմից՝ ամեն տարի քաղաքաշինությանն ու
արդյունաբերական շինարարությանը տրամադրվում են գյուղատնտեսական
թանկարժեք հանդակներ (հաճախ՝ խաղողի, պտղատու այգիներ և ոռոգելի հո-
ղեր), առանց հաշվի առնելու մեր հողային պաշարների սահմանափակությու-
նը, այն հսկայական միջոցները, որ ծախսվել են հանդակների յուրաքանչյուր
հեկտարի յուրացման համար։ Դա առավել ևս անթույլատրելի է, երբ գրեթե
բոլոր վայրերում, մասնավորապես Երևանում ու նրա արվարձաններում գոյու-
թյուն ունեն գյուղատնտեսության համար ոչ պիտանի կամ սակավ պիտանի
հողատարածություններ, որոնք կարելի էր տրամադրել շինարարությանը և ոչ
գյուղատնտեսական այլ նպատակների։

Հողի տնտեսական գնահատման բացակայության պատճառով հանրապե-
տության նախագծային կազմակերպություններն առաջնորդվում են, այսպես
կոչված, «կորուստների հատուցման» սկզբունքով. սովորաբար հիմք է ընդուն-
վում տվյալ կուլտուրայի 3—4 տարվա բերքի արժեքը։ Ըստ այդ նորմաների,
մեկ հեկտար խաղողի այգին շինարարությանը հատկացնելու դեպքում վնասի
հատուցման չափը հասնում է մոտ 7—7,5 հազար ռուբլու։ Անհրաժեշտ է շեշ-
տել, որ ո՛չ այդ նորման, ո՛չ էլ դրա կիրառումից ստացած արդյունքները (հաշ-
վարկած գումարները) չունեն որևէ տեսական հիմնավորում, իսկ գործնակա-
նում արդարացնում են գյուղատնտեսությունից ցանկացած հանդակների դուրս
գրումը։ Մինչդեռ բազմամյա տնկարկները գնահատելիս անհրաժեշտ է ելնել
առնվազն երկու հիմնական գործոնների հաշվառումից. առաջին՝ հողերի ոռոգ-
ման ու յուրացման, ինչպես և բազմամյա տնկարկների հիմնադրման ու դրանց
խնամքի հետ կապված (մինչև պտղաբերության հասակը) հասարակական լրիվ
ծախքերը, երկրորդ՝ անհրաժեշտ է հաշվարկել ու գնահատել հասարակության
կողմից ստացվող զուտ եկամուտը, այդ թվում նաև դիֆերենցիալ հողային
ռենտան բազմամյա տնկարկների շահագործման ողջ ժամկետի առումով (50
տարի)։

ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի հաշվարկների համաձայն,
խաղողի այգիների մեկ հեկտարի տնտեսական արժեքը, ամբողջ զուտ եկա-
մտով, շուրջ 103 հազար ռուբլի է, դիֆերենցիալ հողային ռենտայով՝ 55 հա-
զար ռուբլի, ընդ որում հողի յուրացման, ոռոգման, այգու տնկման և մինչև
պտղաբերության հասակը խնամքի ծախսերը կազմում են ավելի քան 15 հա-
զար ռուբլի։

Միաժամանակ, բացի հողի տնտեսական գնահատումից, կապիտալ շինա-
րարության ցանկացած պլանի մեջ պետք է նկատի ունենալ նաև տվյալ հողա-
մասից ստացվող գյուղատնտեսական արտադրանքի վերարտադրելիության
հնարավորությունը կամ անհնարինությունը, այսինքն՝ հաշվի առնել ոչ միայն
այդ արտադրանքի արժեքը, այլ նրա սպառողական արժեքը (որակը)[1]։

[1]. Հայտնի է, օրինակ, որ խաղողի առանձին, առավել արժեքավոր տեսակները, որոնցից
պատրաստում են հայկական հանրահայտ տեսակավոր սեղանի և թունդ գինիները, կարելի է
աճեցնել միայն Արարատյան դաշտում, ուստի և նման այգիների կորուստը անթույլատրելի է
տնտեսական իմաստով, քանի որ ըստ էության այդ կորուստը բացարձակ է, անհատուցելի՝ նման
հողերի վրա աճեցվող արդյունքի սպառողական արժեքի վերարտադրելիության հնարավորության
տեսակետից։



Չի կարելի չնկատել, որ նշված երկու օբյեկտիվ գործոններն էլ ներկա-
յումս անտեսվում են գյուղատնտեսական հողերը ոչ գյուղատնտեսական նպա-
տակներին հատկացնելիս։ Դրա հետևանքով քաղաքաշինությունը մեզանում
հաճախ զուրկ է տնտեսական լուրջ հիմնավորումից, քանի որ չի խարսխված
հողերի դուրս գրման և կառուցապատման մի շարք տարբերակների մշակ-
ման և համեմատության վրա։

Թե բացասական ինչ հետևանքներ են թողնում հողի տնտեսական գնա-
հատման բացակայությունը և նախագծման ու շինարարության պրակտիկա-
յում առավել արգավանդ հանդակների արժեքի անտեսումը, ցույց տանք մեկ
օրինակով, որը ոչ թե պայմանական, այլ ժողովրդատնտեսական ռեալ նշա-
նակություն ունի։ Խոսքը Հրազդան գետի միջին հոսանքի կարգավորման նա-
խագծի մասին է, կարգավորում, որը պետք է իրագործվի այդ գետի վրա ջրամ-
բարների կառուցմամբ։ Այդ հարցը, ինչպես հայտնի է, ծագել է Արզնի—Շա-
միրամի ոռոգման սիստեմին պատկանող 11 հազար հեկտար խոպան հողերը
ոռոգման ջրով ապահովելու առնչությամբ։ Հանրապետությունում կատարված
հետազոտությունների հիման վրա առաջ են քաշվել Բջնիի և Եղվարդի ջրամ-
բարների շինարարության տարբերակները։ Հետևապես, անհրաժեշտ է տալ
այդ տարբերակներից յուրաքանչյուրի տեխնիկա-տնտեսական ճիշտ գնահա-
տումը՝ դրանցից որևէ մեկի նախապատվության և նպատակահարմարության
առումով։ Մինչդեռ այդ հարցը կարող է լուծվել գերատեսչորեն, որի հետևան-
քով լուրջ վնաս կհասցվի ժողովրդական տնտեսությանը։ «Հայհիդրոնախա-
գիծ» ինստիտուտի հաշվարկների համաձայն, Եղվարդի ջրամբարի նախահաշ-
վային արժեքը շուրջ 20 մլն ռուբլի է. կեսը պոլիէթիլենային թաղանթի ար-
ժեքն է, որով ենթադրվում է ծածկել այդ ջրամբարի հատակը՝ ջրի ֆիլտրացիան
կանխելու նպատակով։ Բջնիի ջրամբարը գնահատվում է 21,7 մլն ռուբլի, այդ
թվում կապիտալ ներդրումները՝ 20 մլն։ Ինչպես տեսնում ենք, առաջին հայաց-
քից երկու տարբերակն էլ կարծես համարժեք են, եթե, իհարկե, անտեսենք օգ-
տագործվող գյուղատնտեսական հանդակները։ Ավելին. Եղվարդի ջրամբարի
կառուցումն ավելի հեշտ է իրականացնել, քանի որ տեխնիկապես ավելի պարզ
լուծում է պահանջում։ Ուստի և զարմանալի չէ, որ ՀՍՍՀ մելիորացիայի և
ջրային տնտեսության մինիստրությունն առայժմ իր ուշադրությունը բևեռել է
Եղվարդի ջրամբարի նախագծի վրա։

Մինչդեռ վերջինիս շինարարությունը կապված է ավելի քան 1.000 հեկ-
տար լավագույն հանդակների՝ խաղողի այգիների և վարելահողերի կորստի
հետ, ընդ որում, շուրջ 800 հեկտար խաղողի այգիները հիմնադրվել են 60-
ական թվականների սկզբին և ըստ էության նոր-նոր են սկսել փոխհատուցել
կատարված ծախսերը։ Պարզ է, որ հիշյալ ջրամբարի տարբերակի հիմնավո-
րումն անհնար է առանց այդ հողերի գնահատման։

Մեր հաշվարկները ցույց են տալիս, որ ջրամբարի տակ մնացող խաղողի
այգիների ընդհանուր արժեքը կազմում է նվազագույնը 44 մլն ռուբլի (դի-
ֆերենցիալ ռենտայով գնահատելու դեպքում) և առավելագույնը՝ 82,4 մլն
(ամբողջ զուտ եկամտի գնահատման դեպքում)։ Պետք է ասել, որ վերջին գու-
մարը ավելի ճիշտ պատկերացում է տալիս կորուստների մասին, քանի որ
դրանում արտացոլված է խաղողի այգիների շահագործումից հասարակության
ստացած ամբողջ զուտ եկամուտը, մինչդեռ ռենտայով գնահատման դեպքում
հաշվի է առնվում այդ եկամտի միայն մի մասը։ Այստեղից հետևում է, որ
Եղվարդի ջրամբարի նախահաշվային արժեքը, նկատի ունենալով կորստի են-
թարկվող խաղողի այգիների գինը, իրականում կազմում է ոչ թե 20, այլ 102,4
մլն ռուբլի։ Իսկ եթե դրան գումարենք նաև 200 հեկտար վարելահողի արժե-
քը, ընդամենը՝ 106 մլն ռուբլի, ապա այն ավելի քան հինգ անգամ գերազան-
ցում է Բջնիի ջրամբարի նախահաշվային արժեքը (վերջինի գրաված հողերը,
ընչին բացառությամբ, գյուղատնտեսական նշանակություն չունեն, ուստի և
նրանց տնտեսական գնահատականը կարելի է հաշվի չառնել)։

Տեսակարար կապիտալ ներդրումները, մեկ խորանարդ մետր կուտակվող
ջրի հաշվով, Բջնիի ջրամբարում կկազմեն 0,29, Եղվարդի ջրամբարում՝ 1,06—

1,51 ռուբլի: Բերած փաստերն անհերքելիորեն վկայում են Բջնիի ջրամբարի տարբերակի անտեսական առավել նպատակահարմարությունը:

Այժմ համառոտ անդրադառնանք աղբյուրների հարցին, որոնք գտնվում են Բջնիի ձորում և ըստ երևույթին կորստի կմատնվեն ջրամբարը լցնելուց հետո: Արդյո՞ք այդ հանգամանքը բացառում է Բջնիի ջրամբարի տնտեսական նպատակահարմարությունը: Ուսումնասիրությունը հակառակն է վկայում: Բջնիի ձորում խմելու ջրի ընդհանուր դեբիտը կազմում է շուրջ 200 լիտր-վայրկյանում: Իհարկե, դա զգալի պաշար է քաղաքների և բնակավայրերի ջրամատակարարման համար: Սակայն, նախ՝ չի կարելի բացառել այդ աղբյուրների փրկության հնարավորությունը, որ պահանջում է հիդրո-երկրաբանական հատուկ ուսումնասիրություն: Եվ, երկրորդ, որ գլխավորն է, հողի և ջրի պաշարների սահմանափակությամբ հանդերձ, խմելու ջրի պաշարներն այսպես թե այնպես հնարավոր է լրացնել կամ փոխհատուցել սովորական, ասենք, գետի ջրի մաքրման միջոցով[1], մինչդեռ խաղողի այգիների համար պիտանի հողատարածությունները չեն կարող ստեղծել նույնիսկ ամենամեծ ծախսերի գնով:

Այսպիսով, ջրամբարների երկու տարբերակների համադրումը վկայում է Բջնիի տարբերակի անվիճելի առավելությունների մասին՝ ինչպես թանկարժեք հողահանդակների պահպանման (որպիսիք Եղվարդի այգիներն են), այնպես էլ խմելու ջրի պաշարների վերարտադրելիության առումով: Անհրաժեշտ է նշել, որ Եղվարդի խաղողի այգիների տնտեսական նշանակությունը մեր հաշվարկների մեջ լրիվ չի արտացոլված, քանի որ այդ այգիների համար պիտանի հողատարածությունները բնության հազվագյուտ պարգևն են և անվերարտադրելի են ցանկացած բարձր կապիտալ ներդրումների առկայության պայմաններում: Ուրեմն, Եղվարդի ջրամբարի կառուցման նախագիծը, որպես նախընտրելի տարբերակ, չի կարելի տնտեսապես հիմնավորված համարել:

***

Վերը խոսեցինք երկու ջրամբարների համեմատական արդյունավետության մասին, հարց, որն այժմ քննարկվում է հանրապետության դիրեկտիվ օրգաններում: Սակայն անհրաժեշտ է շեշտել հետևյալ հանգամանքը: Երկրի գյուղատնտեսության ինտենսիվացման՝ կուսակցության քաղաքականությունը ենթադրում է ոչ միայն զգալիորեն մեծացնել նոր ջրամբարների և ոռոգման սիստեմների կառուցմանը հատկացվող կապիտալ ներդրումները, այլև արդյունավետ օգտագործել առկա հնարավորությունները: Այս առումով հանրապետությունում ոռոգման ջուրն ավելացնելու զգալի ռեզերվներ կան, որոնց օգտագործումը, մեր կարծիքով, կարելի է ավելի անհետաձգելի համարել, քան նոր ջրամբարների շինարարությունը:

Խոսքն ամենից առաջ վերաբերում է ոռոգման սիստեմների օգտակար գործողության գործակցի (ՕԳԳ) բարձրացմանը: Ներկայումս հանրապետության ոռոգման բոլոր սիստեմներում տարեկան կորչում է շուրջ 500 մլն խոր. մետր ջուր, որն ավելի քան երկու անգամ գերազանցում է Հայկական ՍՍՀ բոլոր ջրամբարների ծավալին: Ինչպես հայտնի է, Արզնի—Շամիրամի ոռոգման սիստեմի ՕԳԳ-ն նախատեսվում էր հասցնել 0,7-ի, իսկ միջին հանրապետականը՝ 0,6-ի: Իրականում, սակայն, ոռոգման սիստեմների ՕԳԳ-ն այժմ հասնում է 0,56-ի: Դրա հետևանքով ամեն տարի միայն Սևան—Հրազդանի ոռոգման սիստեմում ջրի կորուստները կազմում են շուրջ 70 մլն խոր. մետր, այսինքն՝ ճիշտ այնքան, որքան նախատեսվում է կուտակել վերոհիշյալ երկու ջրամբարներից յուրաքանչյուրում:

1. Նկատենք, որ խմելու ջրի վերոհիշյալ պաշարը կարելի է ինչ-որ չափով փոխհատուցել այն հսկայական ջրերի հաշվին, որոնք այսօր ծախսվում են արդյունաբերության և տեխնիկական զանազան այլ նպատակներով, որի մասին բազմիցս նշվել է մեր մամուլում: Հայտնի է, օրինակ, որ ներկայումս միայն Երևանում օգտվող վայրկյանում 8 խոր. մետր խմելու ջրից բուն խմելու համար է օգտագործվում միայն 2 խոր. մետր, իսկ մնացածը գնում է այնպիսի նպատակների համար (արդյունաբերություն և այլն), որոնք կարելի է հոգալ ջրերի այլ աղբյուրների հաշվին (ստորերկրյա ջրեր, գետի մաքրված ջուր և այլն):



***

Հանրային հողերի ռացիոնալ օգտագործման շահերից ելնելով, մենք միանգամայն հրատապ ենք համարում հանրապետության վերադաս մարմիններում քննարկվող այն հարցը, որով նախատեսվում է կազմակերպել բնական ռեսուրսների պահպանման պետական համապատասխան մարմին, որի հիմնական ֆունկցիան պետք է լինի հանրապետության բնական ռեսուրսների, ամենից առաջ հողի և ջրի ռացիոնալ օգտագործման ժողովրդատնտեսական պլանների մշակումն ու իրագործումը, ինչպես նաև ընդհանուր վերահսկողություն այդ հարցի նկատմամբ:

Մեր խորին համոզմամբ, անհրաժեշտ է պարտավորեցնել քաղաքային և շրջանային սովետներին, պետշինին ու նախագծային կազմակերպություններին՝ արդյունաբերական ձեռնարկություններ, բնակելի զանգվածներ, ջրաշինարարական և այլ օբյեկտներ նախագծելիս, հաշվի առնել գյուղատնտեսական հողերի որակական հատկանիշները, կառույցներին հատկացնել սակավարժեք կամ գյուղատնտեսության ոչ պիտանի հողամասեր:

Մեր կարծիքով, հարկ է վերանայել նաև առանձին խոշոր արդյունաբերական և այլ օբյեկտների (օրինակ՝ Մասիսի քիմիական կոմպլեքսի) հեռանկարային նախագծումները ինչպես այդ օբյեկտների առավել ռացիոնալ տեղաբաշխման, այնպես էլ, հատկապես, գյուղատնտեսական հանդակների խնայողության առումով: Ամեն ինչ պետք է անել այն հաշվով, որպեսզի բացառվի կամ նվազագույնի հասցվի բազմամյա տնկարկների և այլ թանկարժեք հանդակների կորուստը:

# ԱՌԱՋԱՏԱՐ ՃՅՈՒՂԻՆ՝ ՄՇՏԱԿԱՆ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ

Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ

ԱՅԳԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ ԷՋՄԻԱԾՆԻ ՇՐՋԱՆԻ էկոնոմիկայի ավանդական ճյուղն է։ Դրա բազայի վրա են հիմնվել Էջմիածնի ու Փարաքարի գինու, Էջմիածնի պահածոների գործարանները։ Կոլտնտեսությունների ու սովխոզների առջև խնդիր է դրված՝ ոչ միայն հումքով ապահովել այդ ձեռնարկությունները, այլև մեծ քանակությամբ խաղող ու պտուղ մատակարարել առևտրական կազմակերպություններին։ Ըստ պետական պլանի՝ հանրապետությունում մթերվող խաղողի մեկ տասներորդը բաժին է ընկնում այս շրջանին։

Ինչպես տեսնում ենք, չափազանց մեծ է Էջմիածնի տեղն ու դերը խաղողի, գինու և պահածոների արտադրության մեջ։ Այստեղից էլ բխում է շրջանում խաղողագործության ու պտղաբուծության համակողմանի ու արագ զարգացման կարևորությունը։ Հասկանալի է, բարդ ու պատասխանատու խնդիրներ են ծառացած տնտեսությունների, սկզբնական կուսկազմակերպությունների, շրջանային կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների առջև։ Այժմ տեսնենք, թե հնգամյակի անցած տարիներին ինչպես են լուծվել այդ խնդիրները։

Շրջանի խաղողի ու պտղատու այգիները գտնվում են ոռոգման գոտու մեջ։ Այդ հանգամանքը, ինչպես և բարեբեր հողը, էջմիածնեցի հողագործի փորձն ու հմտությունը վճռական գործոններ են՝ այգիներից առատ բերք հավաքելու համար։ Դրան ավելացնենք, որ Էջմիածնի տարածքում են բազավորված գյուղատնտեսական գիտահետազոտական երեք հիմնարկություններ (այդ թվում՝ Հայաստանի խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության ինստիտուտը), որոնք կարող են էական օգնություն ցույց տալ կոլեկտիվ ու պետական տնտեսություններին՝ խաղողի ու պտղատու այգիների խնամքի ու մշակության առաջավոր և արդյունավետ մեթոդներ ու եղանակներ կիրառելու գործում։

Սակայն, ցավոք, շրջանի տնտեսությունների գերակշռող մասը վատ է օգտագործում խաղողագործության ու պտղաբուծության զարգացման հնարավորություններն ու ռեզերվները։ Դրա վկայությունն այդ ճյուղի տակավին ցածր արդյունքներն են, անմխիթար, տագնապալի վիճակը։ Նախորդ՝ ութերորդ հնգամյակի վերջին տարվա համեմատությամբ, շրջանում նվազել է ինչպես խաղողի համախառն արտադրությունը, այնպես էլ հեկտարի բերքատվությունը։ Այսպես, 1970-ին համախառն արտադրությունը կազմել է 23.407 (պլանի կատարողականը՝ 94,2 տոկոս), հաջորդ տարում՝ 17.942 տոննա (70,2 տոկոս), իսկ 1972—1974 թթ. պլանը կատարվել է համապատասխանաբար՝ 31,3, 48,9 և 65,2 տոկոսով։ Այլ խոսքով, ընթացիկ՝ իններորդ հնգամյակի անցած չորս տարում նախատեսվածից պակաս է հավաքվել ավելի քան 45 հազար տոննա խաղող, որը գրեթե հավասար է երկու տարվա առաջադրանքին։ Ընդ որում, խաղողագործությամբ զբաղվող 41 տնտեսությունների կեսից ավելին համախառն արտադրության քառամյա պլանը թերակատարել է մինչև



50 տոկոսով։ Պտուղների համախառն արտադրության պլանը շրջանը հնգամյակի առաջին, երկրորդ և չորրորդ տարում կատարել է 44—54 և միայն 1973 թ.՝ 140 տոկոսով (այն էլ պլանի խիստ նվազեցման ճանապարհով)։ Քառամյա առաջադրանքի թերակատարումը հասնում է 4.456 տոննայի։

Համանման հարաբերությամբ նվազել է նաև պետական մթերումների ծավալը։ Շրջանը չորս տարում երկրին պարտք է մնացել ավելի քան 47.700 տոննա խաղող և 5.750 տոննա պտուղ։ Ավելին, Մեծամորի, Արաքսի, Գրամփայի, Սամաղարի կոլտնտեսությունները խաղողի մթերումների քառամյա ծրագիրը կատարել են ընդամենը 15—30, տասնհինգ տնտեսություններ, այդ թվում շրջկենտրոնի Լենինի անվան, Միկոյանի անվան, Այգր լճի, Ջվարթնոցի և Կարմիր դրոշի սովխոզները՝ 31—50 տոկոսով։

Սրանք աղաղակող թերություններ ու աններելի թերացումներ են, որոնց կողքից հնարավոր չէ անտարբերությամբ անցնել։ ՀԿԿ Կենտկոմի 1974 թ. ապրիլյան պլենումը, քննարկելով խաղողագործության ու պտղաբուծության հետագա զարգացման և ինտենսիվացման հարցը, միանգամայն ժամանակին խստագույնս քննադատեց նաև Էջմիածնի շրջանի կուսկազմակերպությանը այն բանի համար, որ այստեղ ցածր է այգիների բերքատվությունը և այդ ցուցանիշով շրջանը զգալիորեն զիջում է հանրապետության միջին մակարդակը։

Խաղողագործության ու պտղաբուծության զարգացման և ինտենսիվացման պրոբլեմը նոր չէ։ Ելնելով դրա լուծման շահերից և հույժ կարևորությունից՝ ՀԿԿ Կենտկոմը տակավին 1968 թ. որոշում է ընդունել հին թմբային այգիների վերակառուցման վերաբերյալ։ Նման որոշում է ընդունել նաև ՀԿԿ Էջմիածնի շրջկոմը 1968 թ. մարտին և 1971 թ. հունվարին։ Այդ միջոցառման անհրաժեշտությունը թելադրվում էր ժամանակի պահանջներով։ Բանն այն է, որ թեև թմբային սիստեմը, ինչպես հավաստում են գիտնականներն ու պրակտիկները, հեկտարից ապահովում է ավելի բարձր բերք, սակայն այն ունի մի լուրջ թերություն. այգիների մշակությունը կատարվում է բացառապես ձեռքով, պահանջվում են հսկայական ծախսեր։ Այդ իսկ պատճառով ՀԿԿ Կենտկոմի որոշմամբ խորհուրդ էր տրվում քանդել հին, թմբային նվազ բերքատու այգիները և հիմնել նոր, շարատունկ, լարային սիստեմի, մեքենայական մշակության համար հարմար այգիներ։ Ընդ որում, պետք է բացառվեր ընդհանուր տարածության նվազումը։

Էջմիածնի շրջանի շատ տնտեսությունների ղեկավարներ վարվել են հակառակ կերպ։ Օգտվելով հին այգիները քանդելու իրենց «վերապահված հնարավորությունից»՝ նրանք կրճատել են դրանց տարածությունները. թմբայինը վերացրել են արագ, իսկ լարայինը՝ հիմնել աստիճանաբար։ Ավելին, հաճախ նրանք ազատված տարածությունները տրամադրել են այլ կուլտուրաների, որոնց մշակությունը կապված չէ մեծ հոգսերի հետ։ Գյուղմինիստրությունում եղած տվյալներով միայն 1970—1971 թվականներին քանդվել է 413,5, բայց հիմնվել է 156,7 հեկտար նոր այգի։ Մինիստրության կոլեգիան, 1971 թ. մարտին քննարկելով բազմամյա տնկարկների 1970 թ. համամիութենական հաշվառման արդյունքները և խաղողագործության ու պտղաբուծության ինտենսիվացման խնդիրները, նշել է, որ հատկապես Էջմիածնի շրջանում դանդաղ են վերակառուցվում հին թմբային այգիները։

Գյուղատնտեսական գիտությունն ու պրակտիկան պնդում են, որ ապրանքային բարձր բերք կարելի է ստանալ այգիների զանգվածային տարածություններից, մինչդեռ շրջանի տնտեսություններից հինգն ունի ընդամենը 5—30 հեկտար, տասներկուսը՝ մինչև 50 հեկտար խաղողի այգի։ Հետևաբար, այս առումով ևս այգիների ընդարձակման անհրաժեշտությունը մնում է օրակարգում։ ՀԿԿ Էջմիածնի շրջկոմի պլենումը, 1974 թ. մայիսին քննարկելով խաղողագործության ու պտղաբուծության հետագա զարգացման և ինտենսիվացման հարցը, քննադատեց Սամաղարի, Հայթաղի, Դողսի, Արագածի կոլտնտեսությունների վարչություններին ու կուսկազմակերպություններին այն բանի համար, որ քանդած այգիները հազիվ կիսով չափ են վերականգնել։ Մի՞թե արդարացման տեղ կա, երբ առանձին տնտեսություններ նոր այգիների հիմնումը ձեռնարկում են հինը քանդելուց մի քանի տարի հետո միայն։ Աթար-

բեկյանի և Ֆրանգանոցի կոլտնտեսությունները, վատ մշակության հետևանքով, նույնիսկ քանդել են նորատունկ այգիները։ Եվ ահա հետևանքը. 1968 թ. համեմատությամբ շրջանում խաղողի այգիների տարածությունն այսօրվա դրությամբ կրճատվել է ավելի քան 470 հեկտարով։ Խաղողագործության զարգացման նպատակով կուսշրջկոմը անցած տարի տնտեսություններին 495 հեկտար նոր այգիներ հիմնելու առաջադրանք տվեց, սակայն նրանք հիմնեցին ընդամենը 172 հեկտար։

Հարկ է նշել, որ ՀԿԿ Կենտկոմի այս տարվա հունվարյան պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Դեմիրճյանը, շոշափելով խաղողագործության և պտղաբուծության զարգացման հարցերը, դատապարտեց խաղողի այգիների կրճատման վնասակար տենդենցը։ «Սկսած 1964 թվականից,— ասաց նա,— խաղողի այգիների տարածությունները սիստեմատիկաբար կրճատվում են, նույնիսկ նրա աճեցման համար ամենաբարենպաստ շրջաններում։ Շատ տնտեսություններ այդ տարածությունները կրճատել են այգիների վերակառուցման անվան տակ, բայց իրականում հողատարածությունները զբաղեցրել են ուրիշ կուլտուրաներով։ Դրությունն ավելի է վատթարանում նրանով, որ խաղողի այգիների բերքատվությունն իջել է...»։

Այս քննադատությունը, ինչպես տեսանք վերը շարադրվածից, հավասարապես վերաբերում է նաև Էջմիածնի շրջանին։

ԲՆԱՎ ՉԱՆՏԵՍԵԼՈՎ ԽԱՂՈՂԻ ՈՒ ՊՏՂԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ էքստենսիվ գործոնի դերը, հարկ է շեշտել, որ խաղողագործության ու պտղաբուծության զարգացման, համախառն արտադրանքի ավելացման, ինքնարժեքի իջեցման գլխավոր պայմանը հեկտարի բերքատվության բարձրացումն է։ Դա ոչ միայն այս ճյուղերի, այլև հողագործության զարգացման հիմնական ուղին է, ինտենսիվացման իրական չափանիշը։ Բարձր բերքն ինքնին վկայում է, որ հողի յուրաքանչյուր կտորն օգտագործվում է ռացիոնալ կերպով, խելացիորեն, արդյունավետ, ճիշտ է կիրառվում ջրման ռեժիմը, իրականացվում մյուս ագրոմիջոցառումները։ Այգեգործի համար այբբենական այս ճշմարտությունը շատ տնտեսություններում անտեսվում է։ Դրա հետևանքով տարիներ շարունակ նրանք ցածր բերք են հավաքում ինչպես խաղողի, այնպես էլ պտղատու այգիներից։ Ութերորդ հնգամյակում շրջանի այգեգործների ունեցած առանց այն էլ ցածր ցուցանիշների համեմատությամբ ընթացիկ հնգամյակի անցած տարիներին այգիների բերքատվությունն զգալիորեն նվազել է։ Այսպես, 1970-ին խաղողի միջին բերքատվությունը հեկտարից կազմել է 58,4 ցենտներ, իսկ ընթացիկ հնգամյակի անցած չորս տարիներին՝ համապատասխանաբար՝ 43,5, 20,5, 30 և 44,6 ցենտներ, պտղինը՝ 35,7 ցենտների դիմաց՝ համապատասխանաբար 19,5, 17,4, 29,2 և 23,9 ցենտներ։

Ի՞նչ է պատահել։ Սպառվե՞լ են, արդյոք, բերքատվության բարձրացման հնարավորություններն ու ռեզերվները։ Ամենևին ոչ։ Ոմանք ցածր արդյունքները բացատրում են այգիների վերակառուցմամբ, լարային սիստեմին անցնելով, վազերի ու ծառերի ոչ-լիարժեք բերքատու հասակով կամ ցրտահարությամբ։ Այս պատճառաբանությունների մեջ, անտարակույս, ճշմարտության նշույլ կա, բայց միայն այդքանը. նույն շրջանում իսկ հողակլիմայական միևնույն պայմաններում գտնվող տնտեսությունները թե՛ նպաստավոր, թե՛ աննպաստ տարիներին ստանում են բոլորովին տարբեր արդյունքներ։ Չէ՞ որ Շահումյանի, Լուսագյուղի, Քյուրաքյանդի կոլտնտեսությունները, Թաիրովի անվան սովխոզը և այլ տնտեսություններ (ափսոս, որ դրանք սակավաթիվ են) նույնպես վերակառուցել են իրենց այգիները, անցել լարային սիստեմին, կրել ու ճաշակել բնության բոլոր քմահաճույքները, բայց անհամեմատ առատ բերք են հավաքում։ Անցած տարի, օրինակ, նրանք ամեն մի հեկտարից շրջանի միջին ցուցանիշի համեմատությամբ երկուսից-երեք անգամ ավելի (83—132 ցենտներ) բերք ստացան։ Իսկ Արևշատի կոլտնտեսությունը, որը մշակում է ընդամենը 15 հեկտար խաղողի այգի, ամեն մի հեկտարից հավաքեց 6,7, Արաքսինը՝ 12,2, Այգեշատինը, Աթարբեկյանինը, Աղջաղալայինը, Լենինի անվան սովխոզը՝ 25—29 ցենտներ։ Մի՞թե Արարատի շրջանի Թայթան գյուղի



կոլտնտեսության հողակլիմայական պայմաններն Էջմիածնի շրջանից լավ են։ Բնավ ոչ։ Սակայն այն, լիովին անցնելով լարային սիստեմին, տարիներ շարունակ խաղողի կայուն ու բարձր բերք է ապահովում. անցած տարի, օրինակ, միջին բերքատվությունը 203 ցենտներ էր։ Այս փաստը թղթին հանձնելիս ակամա հիշեցի մի տարեց հողագործի թաքնված կշտամբանքը տնտեսությունների ղեկավարների և մասնագետների հասցեին. «Էջմիածնեցին հեկտարից 200 ցենտներից պակաս բերք ստանալու դեպքում կհրաժարվեր իր այգուց և խաղող մշակելուց»։ Ես չեմ կարող երաշխավորել այս մտքի ճշմարտացիությունը, բայց Թայթանի և հանրապետության մյուս առաջավոր տնտեսությունների օրինակը համոզում է, որ Արարատյան դաշտում հեկտարից 150 ցենտներից ավելի խաղողի բերքը միանգամայն օրինաչափ է։

ՀԿԿ Կենտկոմի 1975 թ. հունվարյան պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Դեմիրճյանն ասաց. «Պտղատու այգիների բերքատվությունը հանրապետությունում բնորոշվում է խիստ արտահայտված տատանումներով և առանձին տարիներ չի անցնում հեկտարից 18—30 ցենտներից»։ Այս իրողության կոնկրետ օրինակը տալիս է նաև Էջմիածնի շրջանը։ Անցած տարի Լուսագյուղի կոլտնտեսությունը հեկտարից հավաքել էր 109, Ապագայինն ու Ջրառատինը՝ 62—67 ցենտներ պտուղ։ Իսկ ինչո՞վ բացատրել, որ Աթարբեկյանի, Մուղանի, Արշալույսի, Դողսի, Արևշատի կոլտնտեսությունները Բաղրամյանի անվան, Այգր լճի, Կարմիր դրոշի սովխոզները մի քանի անգամ պակաս բերք ստացան։ Մինչդեռ մասնագետները պնդում են, որ եթե ծառը նորմալ աճում է, ապա այն ունակ է ամեն տարի բերք տալ։ Իսկ եթե չի տալիս, նշանակում է կամ նախապես բավարար չափով չի մշակվել ու խնամվել, կամ չի փոշոտվել։ Երկու դեպքում էլ մարդու միջամտությունը վճռական դեր է խաղում։

Շրջանում բարձր բերք ստանալու համար կան բոլոր օբյեկտիվ պայմանները։ Հանրապետության գյուղմինիստրի հրամանով 1972 թվականին ստեղծվել է հանձնաժողով՝ Էջմիածնի շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների բազմամյա տնկարկների վիճակը պարզելու, խաղողագործության և պտղաբուծության ետ մնալու պատճառներն ու բարձր բերք ստանալու հնարավորությունները ուսումնասիրելու համար։ Հանձնաժողովը պարզել է, որ Էջմիածնի շրջանի խաղողի այգիների երկու երրորդն ունի լիարժեք բերքատու հասակ, իսկ պտղատու այգիներում մեծահասակ ծառերի տեսակարար կշիռն աննշան է, և այդ հանգամանքները չեն կարող բացասաբար անդրադառնալ բերքատվության վրա։ Այսպիսով, վազերի և ծառերի հասակային առումով պայմանները բավարար են՝ եթե ոչ բարձր, ապա նորմալ բերք ստանալու համար։ Հապա ինչո՞ւ, այնուամենայնիվ, բերքատվության մակարդակը ցածր է։ Չէ՞ որ Արարատյան դաշտի հողը հիմնականում բարեբեր է։ Այնտեղ, ուր հասել է կենարար ջուրը, կպել մարդու ամենակարող ձեռքը, հունդն անարգել ծլարձակել է, բույսը փարթամորեն աճել է, դարձել բերք ու բարիք։ Գուցե այստեղ իսկ հարկ է հիշել ճանաչված հողագործ-գիտնական Տերենտի Սեմյոնովիչ Մալցևի իմաստուն խորհուրդը. «Բնության դեմ ոչ թե պայքարել, այլ բարեկամություն անել նրա հետ»։ Եվ, իրավ, երբ էջմիածնեցի հողագործը բարեկամություն է արել բնության, հողի հետ, առատորեն վարձատրվել է իր վաստակի դիմաց։

ՊԱՐԶԱՊԵՍ ԱՍԵՆՔ, ՈՐ ՑԱԾՐ ԲԵՐՔԱՏՎՈՒԹՅԱՆ հիմնական պատճառը խաղողագործության ու պտղաբուծության զարգացման ու ինտենսիվացման հանդեպ շատ տնտեսություններում դրսևորվող ոչ-սրտացավ, անտարբեր և, եթե ավելի խիստ արտահայտվելու լինենք, անպատասխանատու վերաբերմունքն է։ Գյուղմինիստրության վերը նշված ուսումնասիրությունից, օրինակ, պարզվել է, որ Էջմիածնի շրջանի շատ տնտեսություններում խաղողի ու պտղատու նոր այգիները հիմնվում են ոչ-լիարժեք նախապատրաստված հողերում, բավարար պայմաններ չեն ստեղծվում տնկարկների նորմալ աճի համար։ Ծարատունկ այգիների նոսրությունը 1971 թ. շրջանում 24,1 տոկոս էր (կամ 1.000 հեկտար զուրկ է վազերից), իսկ մի շարք տնտեսություններում՝ 40—50 տոկոս։

Նոսրությունը այն էական պատճառներից է, որն արգելակում է բուսաբուծության, առավել ևս խաղողագործության ու պտղաբուծության զարգացումը: Կուսշրջկոմի պլենումը 1971 թ. հունվարին խնդիր էր դրել տնտեսությունների առջև՝ երկու-երեք տարում վերացնել այգիների նոսրությունը, բայց այն տակավին իրեն զգացնել է տալիս: Հաջորդ տարիներին ևս, մասնավորապես 1974-ին, կուսշրջկոմը քանիցս անդրադարձել է ինչպես այդ, այնպես էլ խաղողագործության ու պտղաբուծության ինտենսիվացման մյուս խնդիրներին, ընդունել համապատասխան որոշումներ, տնտեսությունների համար սահմանել այգիները լիարժեք դարձնելու կոնկրետ առաջադրանքներ: Որոշ տնտեսությունների ղեկավարներ ու կուսկազմակերպություններ անհրաժեշտ եզրակացություն են արել քննադատությունից, գործնական միջոցառումներով լուրջ բեկում մտցրել խաղողի ու պտղի արտադրության գործում: Շահումյանի կոլտնտեսությունն անցած տարի շրջանում ստացավ խաղողի ամենաբարձր բերքը՝ 132,2 ցենտներ ամեն մի հեկտարից, իսկ պտղի բերքատվությամբ գրեթե երկու անգամ գերազանցեց շրջանի միջին մակարդակը: Կոլտնտեսության նախագահ Լ. Նավասարդյանը բացատրում է.

— Մինչև որ չհիմնենք համապատասխան տարածությամբ լարային այգի, թմբայինը չենք քանդում. վերակառուցման ուղին ու նպատակը դա է: Որոշել ենք հիմնել ևս հինգ հեկտար շպալերանի այգի, հասցնել բերքատու հասակի, ապա նոր միայն քանդել մնացած թմբայինը:

Եթե նախագահի ասածին ավելացնենք, որ այստեղ խաղողի ու պտղատու այգիների լիարժեքությունը բարձր տոկոս է կազմում, պահպանվում է ոռոգման ռեժիմը, ժամանակին ու բարձր որակով են կատարվում բոլոր ագրոմիջոցառումները, ապա պարզ կդառնա, թե ինչու կոլտնտեսությունն առատ բերք է ամբարում և քառամյա պլանից ավելի ստացել ու պետությանը վաճառել է զգալի քանակությամբ խաղող, նվաճել պտղի արտադրության ու վաճառքի հնգամյակի բնագիծը:

Բերքատվության բարձրացման ռեզերվները ճիշտ են օգտագործում Թաիրովի անվան, Նորակերտի սովխոզները և մի շարք այլ տնտեսություններ:

Բնավ չթերագնահատելով այգիների լիարժեքությունը բարձրացնելու համար կուսշրջկոմի, շրջսովետի գործկոմի գյուղվարչության, սկզբնական կուսկազմակերպությունների և տնտեսությունների ղեկավարների գործադրած ջանքերը, այնուամենայնիվ, ասենք, որ այս ասպարեզում թերացումները տակավին աչք ծակող են: Նախորդ տարիների համեմատությամբ նոսրությունը թեև նվազել է, բայց այն դեռ բարձր տոկոս է կազմում. կոլտնտեսություններում՝ 22, սովխոզներում՝ 19,5: Նշանակում է, շրջանում այժմ էլ պակասում է ավելի քան 900 հեկտար այգի: Այդ պատճառով բերքատվության ներկայիս ցածր ցուցանիշների դեպքում իսկ շրջանը տարեկան կորցնում է մի քանի հազար տոննա խաղող: Մեծ է նաև պտղի կորուստը: Այս առումով առանձին տնտեսություններ գտնվում են առավել աննախանձելի, անմխիթար վիճակում: Լենուղու, Ծաղկունքի, Սամաղարի, Դաշտի կոլտնտեսություններում, Լենինի անվան և Այգր լճի սովխոզներում նոսրությունը հասնում է 30—35 տոկոսի: Ստացվում է այնպես, որ Այգր լճի սովխոզում 119 հեկտար խաղողի, 100 հեկտար պտղի, Լենինի անվան սովխոզում՝ 82 հեկտար խաղողի այգի զուրկ է տնկարկներից: Մինչդեռ այդ դատարկ տարածություններում ամեն տարի, առանց փոխհատուցման, ներդրվում են աշխատանքային ու նյութական միջոցներ:

Կարծում եմ այս ամենի մասին խոսելուց հետո հարկ չկա ապացուցելու, որ այգիների լիարժեքության ապահովումը ևս խաղողի ու պտղի արտադրության ավելացման, հետևաբար և՝ շահութաբերության, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր ռեզերվ է: Բոլոր տնտեսությունների ղեկավարներն ու մասնագետները դա լավ գիտեն, գիտեն, բայց քչերն են լրջորեն զբաղվում այդ թերացումը շտկելու, այդ ռեզերվը պատշաճ ձևով օգտագործելու հարցով, իսկ սկզբնական կուսկազմակերպությունները հաշտվում են այդ ամենի հետ: Ամեն տարի տնտեսություններին տրվում են այգիների լրացման առաջադրանքներ, բայց դրանք միշտ էլ թերակատարվում



են: Շրջանի ղեկավարներն ու մասնագետներն այս թերացման հիմնական պատճառը համարում են տնկանյութի պակասը: Սրա մեջ, ինչ խոսք, ճշմարտություն կա. անցած տարի կոլտնտեսություններն ու սովխոզները, պահանջված մեկուկես միլիոնի դիմաց, պետական տնկարաններից ստացել են ընդամենը 580 հազար հատ արմատակալ: Տնկանյութի մի մասն էլ եղել է ցածրորակ, ոչ-մաքրասորտ, ոչ-ստանդարտ: Ըստ գյուղվարչության տվյալների, էջմիածնի պետական տնկարանային տնտեսությունն ունի 225 հեկտար պիտանի հողատարածություն, սակայն որպես տնկարան օգտագործում է դրա մեկ տասներորդը, որի կեսից պակասն է հատկացված խաղողի տնկանյութի աճեցմանը: Զարհուրանք ցածր է նաև արմատակալների ելքի տոկոսը: Կուսշրջկոմի բյուրոն, անցած տարվա նոյեմբերին քննարկելով խաղողագործության և պտղաբուծության զարգացման ու ինտենսիվացման հարցը, նշեց նաև, որ բավարար ուշադրություն չի նվիրվում տնկարանային տնտեսությանը. 1974 թ., նախատեսված 34-ի փոխարեն, հիմնվել է 19,5 հեկտար տնկարան, որից մնացել է 15,8 հեկտարը:

Անտարակույս, որոշումներ ընդունելն անհրաժեշտ է, սակայն դրանք պետք է ամրապնդել կազմակերպական կոնկրետ աշխատանքով: Գյուղմինիստրության խաղողագործության ու պտղաբուծության գլխավոր վարչությունում հայտնեցին, որ ամեն անգամ, երբ կոլեգիայի նիստերում քննարկվում կամ շոշափվում է խաղողագործության ու պտղաբուծության հարցը, թերացողների շարքում, որպես եռ մնացողի, միշտ հիշատակվում է և էջմիածնի շրջանը:

ՈՒՐ ԷՋՄԻԱԾՆԵՑԻ ՀՈՂԱԳՈՐԾԸ ՋԳԻՏԻ, որ խաղողի ու պտղի առատ բերք կարելի է հավաքել այգեփորն ու այգեվարը, այգեէտը, այգեբացն ու այգեթաղը, ոռոգումն ու պարարտացումը և մյուս միջոցառումները ժամանակին կատարելու դեպքում: Դա շատ լավ գիտեն նաև տնտեսությունների ղեկավարներն ու մասնագետները: Եվ, այնուամենայնիվ, այդ աշխատանքները ձգձգվում են, շատ տնտեսություններում կատարվում ցածր որակով:

Թեև նախորդ տարիների համեմատությամբ 1974 թ. այդ ագրոմիջոցառումները կիրառվեցին ավելի մեծ ծավալով, բայց թերություններն զգալի էին: Այսպես, շրջանում այգեփորն ու այգեվարը կատարվեցին 71,5 տոկոսով, իսկ Աթարբեկյանի, Սամաղարի, Ծաղկունքի կոլտնտեսություններում, Կարմիր դրոշի, Բաղրամյանի անվան, Այգր լճի սովխոզներում և Ոսկեհատի ուսումնափորձնական տնտեսությունում՝ մինչև 50 տոկոսով: Շատ տնտեսություններ այգիները պարարտացնում են պահանջվածի կեսից էլ պակաս նորմայով կամ միակողմանի: Աթարբեկյանի, Ծաղկունքի, Դաշտի կոլտնտեսությունները կալիումական պարարտանյութերն օգտագործում են չնչին քանակությամբ:

Արարատյան դաշտում այգեգործության ու պտղաբուծության և, ընդհանրապես, կուլտուրական հողագործության վարումն անխզելիորեն կապված է ոռոգման ճիշտ ռեժիմի կիրառման հետ: Եվ բնական է, որ խաղողագործության ու պտղաբուծության խնդիրները շոշափելիս, միշտ էլ բարձրացվում է նաև ոռոգման գործի բարելավման հարցը: Ինչպես նշեց կուսակտիվի 1974 թ. ապրիլին տեղի ունեցած ժողովը, վերջին հինգ տարում կատարվել են ջրաշինարարական որոշ աշխատանքներ: Սակայն շրջանի ոռոգման ցանցի ներկա վիճակը տակավին չի համապատասխանում խաղողագործության ու պտղաբուծության ինտենսիվ զարգացմանը ներկայացվող արդի պահանջներին: Բանն այն է, որ շրջանի ներտնտեսային ոռոգման ցանցը, ինչպես ասաց գյուղմինիստրության ոռոգելի հողերի օգտագործման բաժնի վարիչ Գ. Հակոբյանը, հին տիպի է, հողային հունով, երեսպատված է դրա չնչին մասը, ցածր է ջրման տեխնիկան, անբավարար է կիրառվում ջրման ռեժիմը: Տարիներ շարունակ կոլտնտեսությունները միջոցներ չեն հատկացնում ոռոգման ներքին ցանցի երեսպատման ու կարգավորման նպատակով, նրանց նախագահները պահպանողական վերաբերմունք են ցուցաբերում այդ կարևոր գործի հանդեպ:

Ոռոգման միջտնտեսային ու ներտնտեսային ցանցի անկանոն վիճակի պատճառով ջրի մեծ կորուստ է լինում, առանձին տնտեսություններում տրնկարկներին է հասնում դրա կեսից ոչ ավելին: Մասնագետները գտնում են, որ

հարկավոր է ստեղծել նորագույն տեխնիկայով սարքավորված ոռոգման սիստեմներ, որպեսզի հնարավոր լինի ջրումը կատարել գիտական հիմունքներով: Այս կապակցությամբ հարկ է հրավիրել նաև հանրապետության պետպլանի, գյուղատնտեսության ու մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունների ուշադրությունը. պահանջվում են զգալի կապիտալ ներդրումներ ոչ միայն ոռոգման ներքին ցանցը երեսպատելու և ջրի կորուստները կանխելու, այլև ջրի լրացուցիչ պաշարներ ստեղծելու համար:

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1974 Թ. ԱՊՐԻԼՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԸ խաղողագործության ու պտղաբուծության զարգացման թերություններից մեկը համարեց արտադրության ու գիտության թույլ կապը, այգիների աշխատատար պրոցեսների մեքենայացման ցածր մակարդակը և այդ առնչությամբ քննադատեց նաև Էջմիածնի շրջանում տեղակայված գյուղատնտեսական գիտահետազոտական հիմնարկություններին: Վերջիններս որոշ հետևություն են արել Կենտկոմի որոշումից և բարելավել տնտեսություններին ցույց տրվող օգնությունը: Խաղողագործության, գինեգործության ու պտղաբուծության ինստիտուտը և կուսշրջկոմը հրավիրել են գիտապրակտիկ կոնֆերանս, բրիգադավարների ու մասնագետների սեմինար պարապմունքներ՝ նվիրված խաղողագործության ու պտղաբուծության զարգացման ու ինտենսիվացման ամենատարբեր հարցերին: ՍՄԿԿ XXIV համագումարը մեքենայացումը համարեց գյուղատնտեսության զարգացման հեռանկարային խնդիրներից մեկը: Այդ խնդրի լուծման դրական օրինակ կարող է տալ Թաիրովի անվան սովխոզը: Այստեղ այգիների մշակության գերակշռող մասը կատարվում է մեքենայական եղանակով: Եվ, ինչպես վերը նշվեց, արդյունքները նշանակալի են: Հին, թմբային այգիների վերակառուցումը և անցումը շպալերային, լարային սիստեմին ենթադրում են մեքենայացման բարձր մակարդակ, որը խաղողի ինքնարժեքի իջեցման կարևոր նախապայման է: Սակայն տնտեսությունների զգալի մասում նորն ու առաջավորը դանդաղ է արմատավորվում: Շատ աշխատանքներ տակավին ձեռքով են կատարվում: Խաղողի այգիների միջշարային տարածությունների մշակությունը, պարարտացումը, ոռոգումը մեքենայացված են 55,8, միջվազային մշակությունը՝ 28,7 տոկոսով: Մեքենայական եղանակով կատարվում է ընդամենը 10 հեկտար այգեթաղ և 60 հեկտար այգեբաց:

Ինչպես արդեն նկատում ենք, խաղողագործության ու պտղաբուծության ետ մնալու հիմնական պատճառներից մեկն էլ այն է, որ թվարկած և ուրիշ թերություններ տարիներ շարունակ կրկնվում են, ավանդական այս ճյուղում դառնում ավանդական, նոր հոգսեր ավելացնում եղածին: Այդ ամենի հետևանքը խաղողի ու պտղի բարձր ինքնարժեքն է, շահութաբերության ցածր մակարդակը: 1973-ին, օրինակ, մեկ ցենտներ խաղողի ինքնարժեքը շրջանում կազմեց 58 ռուբլի 65 կոպեկ, Լենինի անվան սովխոզում՝ 102, Այգր լճի, Բաղրամյանի անվան, Ջվարթնոցի, Կարմիր դրոշի սովխոզներում, Աղավնատուն, Ֆրանգանոցի, Հայթաղի, Սամաղարի, Գրամփայի, Արաքսի, Դաշտի կոլտնտեսություններում՝ 60—85 ռուբլի: Խաղողի ու պտղի վաճառքի և հանձնման պլանները թերակատարելու հետևանքով, անցած չորս տարում շրջանի տնտեսությունների կրած կորուստը հասնում է ավելի քան 19 միլիոն ռուբլու: Տնտեսությունների գերակշռող մասում նկատվում է խաղողի շաքարայնության իջեցման տենդենց:

ՀՆԳԱՄՅԱԿԻ ԵԶՐԱՓԱԿԻՉ ՏԱՐՎԱ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՄԲ էջմիածնի շրջանի կոլեկտիվ ու պետական տնտեսությունները պարտավորվել են խաղողի արտադրությունը հասցնել 23 հազար, պտղինը՝ 3.400 տոննայի, վերականգնել ու հիմնել 351 հեկտար խաղողի այգի, նոսրությունը նվազեցնելու նպատակով կատարել 321 հազար հատ լրացում, տնտեսություններում հիմնել 15 հեկտար տնկարան և ստանալ ավելի քան 500 հազար հատ արմատակալ: Պարզ է, սոցիալիստական պարտավորությունները կատարելու դեպքում պայմաններ կստեղծվեն հետագա առաջընթացի համար: Հաջորդ տասներորդ հնգամյակում, հարկ կլինի լուծել ավելի բարդ խնդիրներ, նվաճել ավելի բարձր բնագծեր, լուրջ ուշադրություն նվիրել որակական ցուցանիշների բարելավմանը:



# ԸՆԴԴԵՄ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԴԵՐԻ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԿԵՂԾԱՐԱՐՆԵՐԻ

Մ. Ա. ԱՌԱՔԵԼՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր,
պաճեստի գնդապետ

ԵՐԿՐՈՐԴ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ, որ մարդկությանը պարտադրել էր իմպերիալիզմը, մարտական գործողությունների ծավալայնությամբ և սոցիալ-քաղաքական հետևանքներով իրեն հավասարը չուներ պատմության մեջ: Նրա ոլորտում այս կամ այն կերպ ներքաշվեցին մոտ 60 պետություն, երկրագնդի բնակչության երեք քառորդը: Երկու կոալիցիաների պետությունների զինված ուժերի անձնակազմի թիվը հասավ մինչև 110 միլիոնի: Հարյուր միլիոնավոր մարդիկ թիկունքում զբաղված էին պատերազմը նյութապես ապահովելու խնդրով: Պատերազմը խլեց մոտ 50 մլն մարդկային կյանք: Ֆաշիստական ագրեսորները, որոնք այդ արյունահեղությունը նախաձեռնեցին ժողովուրդներին ստրկացնելու և համաշխարհային տիրապետության հասնելու համար, ջախջախվեցին: Ֆաշիզմի դեմ հաղթանակը ձեռք բերվեց հակահիտլերյան կոալիցիայի պետությունների համատեղ ջանքերով, որի գլխավոր ու վճռական ուժը Սովետական Միությունն էր: Ինչպես իրավացիորեն նշված է «1941—1945 թթ. Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 30-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, «Մեր երկիրն այն գլխավոր ուժը եղավ, որը փակեց գերմանական ֆաշիզմի համաշխարհային տիրապետության ճանապարհը, իր ուսերի վրա կրեց պատերազմի հիմնական ծանրությունը և վճռական դեր խաղաց հիտլերյան Գերմանիայի, ապա նաև միլիտարիստական Ճապոնիայի ջախջախման գործում»:

Սակայն բուրժուական կեղծարարները, կանխամտածված խեղաթյուրելով պատմությունը, փորձում են ժխտել սոցիալիզմի երկրի վճռական դերը ձեռք բերված հաղթանակի մեջ և այն վերագրել արևմտյան տերություններին:

Տվյալ հարցի մեկնաբանման մեջ կարելի է նշել բուրժուական պատմագրության երեք հիմնական շրջան՝ պատերազմի, «սառը պատերազմի» և միջազգային լարվածության թուլացման:

Պատերազմի ժամանակաշրջանում Լոնդոնի և Վաշինգտոնի պաշտոնական շրջանները խոստովանում էին ՍՍՀՄ-ի վճռական դերը հակահիտլերյան կոալիցիայում և բարձր էին գնահատում մեր բանակի մատուցած վիթխարի ծառայությունները: Այսպես, Ֆրանկլին Ռուզվելտը դեռևս 1942 թ. մայիսին նշել էր. «Մեծ ստրատեգիայի տեսակետից պարզ է հասարակ մի փաստ. ռուս-

ները հակառակորդի ավելի շատ զինվորներ են սպանում և նրա զենքն ու հանդերձանքն ավելի շատ են ոչնչացնում, քան Միացյալ ազգերի մյուս 25 պետությունները միասին վերցրած» (П. Н. Поспелов, Исторические итоги и уроки Великой Отечественной войны, М., 1965, стр. 15):

Իսկ Ուինստոն Չերչիլը 1943 թ. օգոստոսի 31-ին ռադիոյով ունեցած իր ելույթում ասել է. «Ռուսաստանը գերմանական ռազմական մեքենային մահացու կորուստ պատճառեց: Դա չէր կարող անել աշխարհի ոչ մի այլ ուժ» («За рубежом» , 1970, № 19, стр. 7):

Պատերազմի ընթացքում նույն ոգով են արտահայտվել Արևմուտքի բազմաթիվ այլ քաղաքական ու ռազմական գործիչներ:

Սակայն հետպատերազմյան տարիներին, սոցիալիստական երկրների դեմ ծավալված «սառը պատերազմի» պայմաններում այդ օբյեկտիվ, ընդհանուր առմամբ ճիշտ գնահատականների հետքն անգամ չմնաց: Այդ ժամանակաշրջանի բուրժուական հեղինակների աշխատություններում սովետական զորքերի մարտական գործողությունները կամ լիովին անտեսվում էին, կամ գնահատվում էին որպես երկրորդական իրադարձություններ և ընդհակառակը՝ առաջին պլան էին քաշվում, գովաբանվում ու վճռական համարվում ամերիկյան և անգլիական զորքերի գործողությունները:

Հաղթանակի գործում Սովետական Միության դերի թերագնահատման և արևմտյան տերությունների դերի գերագնահատման այդ ոգով են ներթափանցված Չերչիլի հուշագրությունները, Ֆուլլերի, Մորիսոնի, Կլերկի, Դյուպուիի, Մոլի, Հարտի, Նորմանի և ուրիշների աշխատությունները՝ սոսկ այն տարբերությամբ, որ ամերիկյան հեղինակներն առաջնություն են տալիս ԱՄՆ-ի, իսկ անգլիացիները՝ Մեծ Բրիտանիայի դերին: Այսպես, անգլիացի ռեակցիոն պատմաբան Ա. Կլերկը 1966 թ. հրատարակած Բարբարոսա: 1941—1945 թթ. ռուս-գերմանական կոնֆլիկտը գրքում ուղղակի նշել է, որ կարմիր բանակի բոլոր հաջողությունները «երկրորդական էին ստրատեգիայի զարգացման գործում դրանց դերի առումով» ( В. А. Секистов. **Против буржуазных фальсификаторов истории второй мировой войны.** М., 1974, стр. 30):

Ա. Նորմանը Օվերլորդ օպերացիան գրքում շեշտում է, որ «ամերիկյան զորքերն առաջատար դեր խաղացին Գերմանիայի ջախջախման գործում» (նույն տեղը): Բուրժուական բազմաթիվ գործիչներ Միացյալ Նահանգներին համարում են հաղթանակի «գլխավոր ճարտարապետ», «հիմնական զինանոց» և այլն:

ԹՎԱՐԿԵՆՔ ԱՅՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՎԵՐՍԻԱՆԵՐԸ, որոնց օգնությամբ կեղծարարները փորձում են ժխտել ֆաշիստական ռազմական մեքենայի ջախջախման գործում կարմիր բանակի վճռական դերը և այն վերագրում արևմտյան տերությունների զորքերին:

Որոշ աշխատություններում իրենց ծավալաչափերով ոչ մեծ, տեղական բնույթի պատերազմական գործողությունները ներկայացվում են որպես ստրատեգիական վճռական նշանակություն ունեցող իրադարձություններ, դատողություններ արվում սովետա-գերմանական ռազմաճակատից դուրս համաշխարհային պատերազմի «շրջադարձային կետերի» մասին: Այսպես, Չերչիլը, իսկ նրանից հետո Ֆուլլերը և ուրիշներ 1942 թ. աշնանը Էլ-Ալամեյնի մոտ տեղի ունեցած ճակատամարտը համարում են բեկումնային իրադարձություն, որը «փոխեց պատերազմի ողջ ընթացքը»: Եվ այդպես ասվում է, առանց հաշվի առնելու, որ Էլ-Ալամեյնում անգլիացիների դեմ գործում էին ընդամենը իտալական 11 և գերմանական 3 դիվիզիաներ, մինչդեռ Ստալինգրադի մոտ սովետական զորքերի դեմ կռվում էին գերմանական բանակի ողջ ուժերը և Հիտլերի արբանյակ-պետությունների մեծ թվով զորքեր: 1972 թ. Լոնդոնում հրատարակված Երկրորդ համաշխարհային պատերազմի մեծ ճակատամարտեր մենագրության հեղինակ Գ. Մոլն առանձնացնում է այդ պատերազմի 13 վճռական ճակատամարտեր, որոնց թվում նշում է մեր զորքերի մղած երկու ճակատամարտերը միայն՝ Մոսկվայի և Ստալինգրադի:

Ընթերցողներին համոզել, որ պատերազմի ընթացքում վճռական մար-



տական օպերացիաները տեղի են ունեցել ոչ թե կարմիր բանակի գործողության գոտում, այլ այնտեղ, որտեղ գործում էին ԱՄՆ-ի և Անգլիայի զորքերը՝ սա է կեղծարարների նպատակը:

Ոմանք պնդում են, որ հենց դաշնակից զորքերի մուտքը Նորմանդիա գերմանացիներին ստիպեց զենքը ցած դնել: Այսպես, ամերիկյան բանակի շտաբի նախկին պետ, գեներալ Դ. Մարշալը գրել է, որ «համաշխարհային պատերազմում հաղթանակը պայմանավորված էր «Օվերլորդ» օպերացիայի հաջող կազմակերպմամբ» (**История Великой Отечественной войны Советского Союза 1941—1945**, М., 1965, стр. 23): Լ. Հարտը Անուղղակի գործողությունների ստրատեգիան գրքում բազմիցս շեշտել է, որ դաշնակից զորքերի ափհանումը Նորմանդիա՝ ֆաշիստական բլոկի դեմ ուղղված պատերազմի վճռական իրադարձությունն էր:

Ոմանք էլ առաջ են քաշում դաշնակիցների հաղթանակի գործում անգլո-ամերիկյան ավիացիայի կողմից Գերմանիայի ստրատեգիական ռմբակոծումների վճռական դերի վերաբերյալ վերսիան, ռմբակոծումներ, որոնք, իբր, հակառակորդին զրկեցին պատերազմը շարունակելու համար անհրաժեշտ նյութատեխնիկական բազայից: Այսպես, անգլիացի պատմաբան Պ. Յանգը պնդում է, որ «...դաշնակից ավիացիայի հարվածները Գերմանիային կանգնեցրին աղետի եզրին» (տե՛ս Վ. Ա. Սեկիստով, նույն աշխատ., էջ 30):

Կեղծարարների թվում կան նաև այնպիսի «տեսաբաններ», որոնք, փորձելով նսեմացնել սովետական զորքերի մարտական բարձր վարպետությունը, հայտարարում են, թե կարմիր բանակի հաղթանակները և ֆաշիստական զորքերի պարտությունները սովետա-գերմանական ռազմաճակատի խոշոր ճակատամարտերում պայմանավորված էին սովետական զորքերի սոսկ բազմակի թվական գերազանցությամբ: Այսպես, Լ. Հարտը գտնում էր, որ մեր թվական գերազանցությունը 12 անգամ էր ավելի, Տիպելսկիրխը՝ 20 և այլն:

Արևմտյան որոշ ռազմական պատմաբաններ (Ֆուլեր, Դյուպուի և ուրիշներ) նույնիսկ անհեթեթ եզրակացություններ են անում, որ ռազմի դաշտերում հակառակորդին, իբր, հաղթում էր ոչ թե կարմիր բանակը, այլ՝ «գեներալ ձմեռը», «գեներալ տարածությունը», «գեներալ ցեխը», այսինքն՝ զուտ կլիմայական, աշխարհագրական գործոնները:

Բուրժուական բազմաթիվ հեղինակներ տարածում են այն թեզը, որ «լենդլիզով ամերիկյան օգնությունը Ռուսաստանի փրկության հիմնական գործոնն էր» (**Против фальсификаторов истории второй мировой войны.** М., 1964, стр. 318), որ իբր, առանց այդ օգնության Սովետական Միությունը կպարտվեր վճռական մարտական գործողություններում և ընդհանուր առմամբ տանուլ կտար պատերազմը:

Արևմտագերմանական բուրժուական պատմագրությանը (Տիպելսկիրխ, Էրդման, Յակոբսեն և ուրիշներ) առանձնապես բնորոշ է Գերմանիայի պարտության համար ամբողջ մեղքը միայն Հիտլերի վրա բարդելու և այն բանն ապացուցելու ձգտումը, որ իրենք պատերազմը տանուլ տվեցին ոչ թե այն պատճառով, որ Սովետական Միությունը ֆաշիստական Գերմանիայից ավելի զորեղ դուրս եկավ, այլ՝ պատահաբար, Հիտլերի անտաղանդության, ռազմական հարցերում նրա անիրազեկության, մարտական օպերացիաները ծրագրելու և վարելու գործում նրա թույլ տված ճակատագրական սխալների պատճառով: Նպատակը պարզ է՝ սահմանազատվել Հիտլերից, վերականգնել գերմանա-ֆաշիստական բանակի և նրա ղեկավարների հեղինակությունը, հարություն տալ գերմանական բանակի «անպարտելիության» առասպելին՝ սոցիալիստական երկրների դեմ նոր ագրեսիա նախապատրաստելու նպատակով ռևանշիստական պրոպագանդա բորբոքելու համար:

Ինչ վերաբերում է միլիտարիստական Ճապոնիայի դեմ մղված պատերազմին, ապա բուրժուական պատմաբանները (առանձնապես ամերիկյան) փորձում են լիովին ժխտել Սովետական Միության դերը հեռավոր-արևելյան ագրեսորի ջախջախման գործում, հայտարարելով, որ այդ պատերազմը զուտ ամերիկյան էր: Նրանք ճգնում են ցույց տալ, թե հակաճապոնական պատերազմի մեջ ՍՍՀՄ-ի մտնելը, իբր, «մեռնողին հասցված հարված» էր միայն:

հաղթանակները դաշնակիցներին հնարավորություն տվեցին հաջողությամբ անցնելու Լա-Մանշը, ամրանալու նորմանդական պլացդարմում և հարձակողական խոշոր գործողություններ ծավալելու պատերազմի արևմտա-եվրոպական թատերաբեմում:

Ավելին, հարկ է նշել, որ 1945 թ. հունվարին սովետական զորքերի հզոր հարձակումը դաշնակից զորքերին փրկեց Արդեններում ջախջախվելուց: Հաշվի առնելով օգնության մասին դաշնակիցների խնդրանքը, մեր զորքերը 1945 թ. հունվարի 12-ին, այսինքն՝ նախատեսված ժամկետից մեկ շաբաթ շուտ, հզոր հարձակում սկսեցին Բալթիկայից մինչև Կարպատներ ձգվող ռազմաճակատում, գերմանական հրամանատարությանը ստիպելով կանգնեցնել հարձակումն Արևմուտքում և անհապաղ Արևելյան ռազմաճակատ փոխադրել երկու տանկային բանակ: Այսպիսով, մեր բանակի կողմից իր դաշնակցային պարտքն ավելորեն կատարելու շնորհիվ հակառակորդի վտանգավոր հարձակումը վիժեցվեց: Իրենց դաշնակցային պարտքի կատարման նկատմամբ այլ կերպ էին վերաբերվում Անգլիայի և ԱՄՆ-ի ղեկավարները: Նրանք, մասնավորապես, վիժեցրին Եվրոպայում 1942 թ. երկրորդ ճակատ բացելու մասին համաձայնագրի իրագործումը՝ հետաձգելով այն երկու տարով: Մինչդեռ, եթե նրանք այդ անեին նշված ժամանակամիջոցում, ինչպես դա պահանջում էին միջդաշնակցային պարտավորությունները և կոալիցիոն ստրատեգիական շահերը, ապա հաղթանակը ձեռք կբերվեր ավելի շուտ և ավելի քիչ զոհերի գնով:

Քննադատության չի դիմանում նաև հաղթանակի գործում ամերիկա-անգլիական ավիացիայի վճռական դերի մասին բուրժուական պատմագրության վերսիան: Դաշնակցային ավիացիայի կողմից Գերմանիայի արդյունաբերական կենտրոններին հասցված հարվածները, անշուշտ, թուլացրին հակառակորդի ռազմա-տնտեսական կարողությունը: Բայց, ինչպես հայտնի է, Գերմանիայի ռազմական էկոնոմիկան մինչև 1944 թ. ամառը վերելքի մեջ էր: Ըստ պաշտոնական տվյալների, նրա ռազմական արտադրությունն այդ ժամանակ, 1942 թ. համեմատությամբ, նույնիսկ ընդլայնվել էր ավելի քան երեք անգամ (տե՛ս **Промышленность Германии в период войны 1939—1945 гг.**, М., 1956, стр. 94):

Գերմանիայի ռազմական էկոնոմիկայի անկումը փաստորեն, սկսվեց 1944 թ. երկրորդ կեսին, և դրա գլխավոր պատճառը սովետական բանակի վճռական հաղթանակներն էին, որոնց հետևանքով Գերմանիան զրկվեց Ռումինիայի նավթամթերքներից, կորցրեց Չեխոսլովակիայի, Լեհաստանի ու Հունգարիայի արդյունաբերական բազաները և Արևելյան ու Հարավ-Արևելյան Եվրոպայի գյուղատնտեսական մթերքների աղբյուրները:

Սուտ է կեղծարարների նաև այն թեզը, որ մեր բանակը հաղթանակ նվաճեց հակառակորդի նկատմամբ իր ունեցած բազմակի թվական գերազանցությամբ միայն: Իրականում ոչ մի ճակատամարտում մեր զորքերը տասներկու և մանավանդ քսան անգամ գերազանցություն չեն ունեցել: Նույնիսկ Բեռլինյան օպերացիայի ժամանակ մենք նրանց գերազանցում էինք՝ մարդկանց թվով 2,5, հրետանիով և տանկերով՝ 4, ավիացիայով՝ 2,3 անգամ (տե՛ս **История Великой Отечественной войны Советского Союза**, т. 5, стр. 465):

Իսկ եթե սովետական հրամանատարությանը հաջողվեց ճակատամարտերում ուժերի և միջոցների ճնշող գերազանցություն ստեղծել գլխավոր հարվածների ուղղություններում, ապա դա վկայում է սովետական ռազմական արվեստի կատարելության, մեր զորապետերի՝ հարվածային խմբավորումներ ստեղծելու, հաջողությամբ ուժերը տեղաբաշխելու, դրանք ռազմի դաշտերում ղանգվածաբար օգտագործելու հմտության մասին:

Եվ, այնուամենայնիվ, կա մի ճշմարտություն. այո՛, մեր զորքերն ունեին առավելություն հակառակորդի նկատմամբ: Դա սովետական մարտիկների բարոյական անխորտակ ուժն էր, բարձր գիտակցականությունն ու հաղթանակի հավատը, հարազատ կոմունիստական կուսակցությանը նրանց անսահման նվիրվածությունը:

Ավելի անհեթեթ, ծիծաղելի են բուրժուական պրոպագանդայի այն պնդումները, որ ճակատամարտերում հաղթանակը, իբր, ձեռք են բերել ոչ թե սովետական զորքերը, այլ՝ «գեներալ ձմեռը», «գեներալ տարածությունը», «գեներալ ցեխը»: Աշխարհագրական և կլիմայական գործոնները, անշուշտ, դեր են խաղում պատերազմում, բայց ակներև է, որ դրանց ազդեցությունը (դրական կամ բացասական) հավասարապես վերաբերում է կռվող երկու կողմերին: Բացի այդ, չպետք է մոռանալ նաև, որ մեր զորքերը ֆաշիստներին հարվածում էին տարվա բոլոր ժամանակներին, միանգամայն տարբեր կլիմայական պայմաններում, ընդ որում՝ նաև հակառակորդի տերիտորիայում:

Ֆաշիզմի դեմ տարած հաղթանակի գործում սովետական բանակի վճռական դերի մասին են վկայում նաև պատերազմում հակառակորդի և դաշնակիցների կրած կորուստների վերաբերյալ համեմատական տվյալները: Մեր զորքերը ոչնչացրել, ջախջախել և գերի են վերցրել թշնամու 607 դիվիզիա, իսկ անգլո-ամերիկյան զորքերը՝ 176: Պատերազմի ընթացքում հակառակորդը մարտական տեխնիկայի 75 տոկոսը և ավիացիայի երկու երրորդը կորցրել է արևելյան ռազմաճակատում (տե՛ս «Красная звезда», 2 марта 1965 г.): Գերմանիայի 13 մլն 600 հազար մարդկային կորստից (սպանվածներ, այլև շարք չվերադարձող վիրավորներ, անհետ կորածներ և գերվածներ) 10 միլիոնը (73 տոկոս) բաժին է ընկնում արևելյան ռազմաճակատին: Մեր ժողովուրդը պատերազմում հաղթեց հերոսական ջանքերի, անասելի տառապանքների և մեծ զոհողությունների գնով: Մարդկությանը ֆաշիստական ժանտախտից փրկելու համար իրենց կյանքը զոհեցին ավելի քան 20 մլն սովետական մարդիկ: Մինչդեռ ԱՄՆ-ը պատերազմում կորցրեց ընդամենը 405 հազար, իսկ Մեծ Բրիտանիան՝ 375 հազար մարդ (տե՛ս **Великая Отечественная война Советского Союза 1941—1945 г.г.** Краткая история, М., 1965, стр. 442):

Սովետական բանակը վճռական դեր խաղաց նաև միլիտարիստական Ճապոնիայի ցամաքային բանակի գլխավոր ուժերի ջախջախման, ագրեսիայի հեռավոր-արևելյան օջախի վերացման գործում: Ինչպես հայտնի է, ԱՄՆ-ը և Անգլիան, փաստորեն ընդունելով, որ միայն սեփական ուժերով հնարավոր չէ արագ հաղթանակի հասնել Ճապոնիայի նկատմամբ, դիմեցին սովետական կառավարությանը՝ առաջարկելով Գերմանիայի ջախջախումից հետո մտնել պատերազմի մեջ:

Միջդաշնակցային պայմանավորվածության համաձայն, 1945 թ. օգոստոսի 8-ին Սովետական Միությունը պատերազմ հայտարարեց Ճապոնիային: Մեր զորքերը խորտակիչ հարված հասցրին Կվանտունյան միլիոնանոց բանակին: Հակառակորդն ստիպված զենքը ցած դրեց և սեպտեմբերի 2-ին ստորագրեց անվերապահ կապիտուլյացիայի ակտը: Նշենք, որ դեռ 1945 թ. հուլիսին ճապոնական կառավարությունը վճռականորեն մերժել էր կապիտուլյացիայի մասին անգլո-ամերիկյան վերջնագիրը և բնավ մտադիր չէր զենքը ցած դնել: Իսկ արդեն օգոստոսի 9-ին Ճապոնիայի պրեմիեր-մինիստր Սուձուկին գերագույն ռազմական խորհրդի նիստում ուղղակի հայտարարեց. «Այսօր առավոտյան պատերազմի մեջ Սովետական Միության մտնելը մեզ վերջնականապես դնում է անելանելի վիճակի մեջ և անհնար դարձնում պատերազմի հետագա շարունակումը» (**История Великой Отечественной войны Советского Союза**, т. 5, стр. 584):

Իրականում այսպիսին էր վիճակը: Սակայն հետպատերազմյան ամերիկյան (և ոչ միայն ամերիկյան) պատմագրությունը փորձում է ժխտել ՍՍՀՄ զինված ուժերի աչքի ընկնող դերը Հեռավոր Արևելքում ագրեսորի դեմ տարած հաղթանակի գործում:

Ոչ մի քննադատության չի դիմանում նաև յենդ-լիզով «Սովետական Միության փրկության մասին» պնդումը: Սովետական բանակն ագրեսորների նկատմամբ հաղթանակի հասավ՝ հենվելով սոցիալիզմի երկրի հզոր ռազմական էկոնոմիկայի վրա: Մեր զորքերը տեխնիկայով, պարենով, ավտոտրանսպորտով, հանդերձանքով, կապի և այլ միջոցներով ապահովելու գործում, անշուշտ, որոշ նշանակություն ունեին ԱՄՆ-ի և Անգլիայի մատակարարումները, և մենք դա չենք ժխտում: Բայց չէ՞ որ այդ մատակարարումները կազմում էին արդյունաբերական արտադրանքի հայրենական արտադրության մոտ 4 տո-

կռսը միայն և, բնականաբար, երբեք չէին կարող վճռական դեր խաղալ մեր զինված ուժերի կարիքների բավարարման հարցում, չխոսելով արդեն այն մասին, որ մինչև 1942 թ. գարունը՝ մեզ համար այդ ամենածանր ամիսներին, ամերիկյան մատակարարումները գրեթե սիմվոլիկ բնույթ էին կրում: 1945 թ. մայիսին Գ. Հոպկինսը՝ Ֆ. Ռուզվելտի մերձավորագույն զինակիցը, միանգամայն արդարացիորեն նշել է. «Մենք երբեք չենք պնդել, որ Լենդ-Լիզի գծով մեր օգնությունը Արևելյան ռազմաճակատում Հիտլերի դեմ տարած սովետական հաղթանակի գլխավոր գործոնն է: Հաղթանակը ձեռք բերվեց ռուսական բանակների հերոսությամբ և արյամբ» (Р. Шервуд. **Рузвельт и Гопкинс, глазами очевидца**, М., 1958, стр. 626):

Պատերազմի տարիներին ՍՍՀՄ-ում արտադրվել էին 102,5 հազար տանկ և ինքնընթաց հրետանային սարքեր, 136,8 հազար մարտական ինքնաթիռ, 489,5 հազար հրանոթ: Իսկ ԱՄՆ-ից և Անգլիայից ստացել ենք 11,5 հազար տանկ, 19 հազար ինքնաթիռ (որոնցից 14 հազարը՝ փոխադրական), 9.600 հրանոթ, 401 հազար ավտոմեքենա (տե՛ս Ն. Ն. Պոսպելով, նույն աշխ., էջ 11):

Այս տվյալները հերքում են կեղծարարների այն պնդումները, որ առանց ամերիկյան օգնության Սովետական Միությունը, իբր, կպարտվեր պատերազմում: Պատերազմ վարելու համար անհրաժեշտ նյութական արժեքներ էին ստեղծվում մեր մարդկանց, բազմազգ սովետական ժողովրդի հերոսական ջանքերի շնորհիվ: Դրանում դրսևորվեց սոցիալիստական հասարակարգի մեծագույն ուժը՝ թշնամու դեմ մեր տարած ռազմական և տնտեսական հաղթանակի գլխավոր ակունքը:

ԱՅՍՊԻՍՈՎ, ՓԱՍՏԱԿԱՆ ՏՎՅԱԼՆԵՐԻ օբյեկտիվ գնահատումը ցույց է տալիս, որ հակահիտլերյան կոալիցիայի տարած հաղթանակում վճռական դերը պատկանում է Սովետական Միությանը: Մեր հաղթանակը նոր ուժով հաստատեց լենինյան այն մտքի ճշմարտացիությունը, որ «Երբեք չեն հաղթի այն ժողովրդին, որի մեջ բանվորներն ու գյուղացիները իրենց մեծամասնությամբ իմացել, զգացել և տեսել են, որ իրենք պաշտպանում են իրենց, սովետական իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 386):

Մեր պատմական հաղթանակի վճռական պայմանն այն էր, որ Սովետական Միության արդարացի պատերազմը ղեկավարում էր լենինյան կուսակցությունը, որը համախմբեց ժողովրդին, կարողացավ արդյունավետ օգտագործել սոցիալիզմի օբյեկտիվ հնարավորություններն ու առավելությունները և անդուլ աշխատանքով ապահովեց մեր արդար գործի հաղթանակը:

Օրինաչափ էր նաև հիտլերյան Գերմանիայի պարտությունը պատերազմում: Իմպերիալիստական, ֆաշիստական հակաժողովրդական հասարակարգը չդիմացավ պատերազմի փորձություններին և կործանվեց: «Սովետական Միության Հայրենական մեծ պատերազմի արդյունքները համոզիչ կերպով ցույց տվին, որ աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանային ջախջախել սոցիալիզմը... Այդ արդյունքներն ահեղ նախազգուշացում են իմպերիալիստական ագրեսորներին, պատմության խիստ և անմոռանալի դաս» (**50 лет Великой Октябрьской социалистической революции.** Тезисы ЦК КПСС, М., 1967, стр. 23):

Այսպիսին է պատմության ճշմարտությունը: Եվ որքան էլ բուրժուական կեղծարարները ջանան ժխտել սովետական ժողովրդի վճռական դերը մարդկությանը ֆաշիստական ստրկացման վտանգից փրկելու գործում, նրանց չի հաջողվի պատմության տարեգրությունից, ժողովուրդների հիշողությունից ջնջել սոցիալիզմի մեծ երկրի հերոսական սխրագործությունը, որը կապրի դարեդար:

# ՀԱՅՐԵՆԻՔԻ ԶԻՆՎՈՐԸ

ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆԻ ԱՎԱՐՏԻՑ երեք ամիս առաջ էր: Երրորդ բելոռուսական ռազմաճակատի զորամասերը Մելզակ քաղաքի շրջակայքում կատաղի կռիվներ էին մղում հակառակորդի դեմ: Մարտական գործողությունները մոտիկից ղեկավարելու համար առաջավոր գիծ է մեկնում ռազմաճակատի հրամանատարը: Նա լավ էր հասկանում, որ չի կարելի ռիսկի ենթարկել կյանքը, բայց, այնուամենայնիվ, չէր կարող այդ վճռական պահին երկար մնալ առաջավոր գծից հարյուր կիլոմետր հեռու գտնվող հրամանատարական կետում: Ավտոմեքենան հազիվ էր անցել երկու կիլոմետր, երբ հետևում պայթեց ծանր արկը: Հրամանատարը մահացու վերք ստացավ: Նա մեռավ այնպես, ինչպես վայել է իսկական զինվորին՝ ոչ թե անկողնում, այլ կանգնած, թեժ մարտում: Բանակի գեներալ Իվան Դանիլովիչ Չեռնյախովսկին ընդամենը երեսունյոթ տարեկան էր...

Ականավոր զորահրամանատարի, Սովետական Միության կրկնակի հերոս Ի. Դ. Չեռնյախովսկու կյանքին է նվիրված Ակրամ Շարիպովի գիրքը*:

Դառն է եղել Չեռնյախովսկու մանկությունը Վիննիցայի մարզի Վերբովո փոքրիկ գյուղում: Հայրը՝ Դանիլա Նիկոլաևիչը, ձիապան էր: Վերբովոյում Չեռնյախովսկիների բազմանդամ ընտանիքին սիրում էին ազնվության ու արդարամտության համար: Եվ պատահական չէ, որ պետլյուրականները վերբովցիների աչքից չհամարձակվեցին գնդակահարել Դանիլա Նիկոլաևիչին՝ կալվածատեր Նոմինսկու ձիերը գյուղացիներին բաժանելու համար: Այդ տարիներին երկրում մոլեգնում էին սովը, տիֆը:

Տասներեք տարեկան էր Վանյան, երբ համաճարակի զոհ դարձան ծնողները: Հարևանը՝ Դանիլա Նիկոլաևիչի մտերիմ ընկեր Ցեշկովսկին, իր խնամքի տակ վերցրեց երեխաներին: Բեռ չլինելու համար Իվանը դարձավ վարձու հովիվ, ապա՝ ուղերանվոր, փականագործի օգնական:

1920 թվական: Կարմիր բանակն աջափնյա Ուկրաինայից դուրս էր քշել գերմանական օկուպանտներին: Ապրիլի վերջին լեհական բուրժուական պետության ղեկավար Պիլսուդսկին հրամայեց իր զորքերին հարձակվել Ուկրաինայի վրա: Լեհական պաների մի ջոկատ հասավ մինչև Վերբովո: Մութն ընկնելուն պես, Իվանն իր խմբով դարանակալեց անտառում, և երբ լեհերը մոտենում էին դարանին, լսվեցին համազարկեր: Լեհերին թվաց, թե պարտիզաններ են հարձակվում և մարտի չբռնվելով, փախան: Տղաները տոնեցին իրենց հաղթանակը:

Երեք տարի անց Իվանը մեկնեց Նովոռոսիյսկ: «Պրոլետար» գործարանում կես տարի աշխատելուց հետո ընտրվեց գործարանի կոմերիտական կազմակերպության բյուրոյի կազմում: Այստեղ նա ծանոթացավ կոմերիտմիության օկրուգային կոմիտեի բյուրոյի անդամ Նիկոլայ Զինովևի հետ, վերջինիս երաշխավորությամբ 1924 թ. ամռանն ընդունվեց Օդեսայի հետևակային դպրոցը, ապա փոխադրվեց Կիևի հրետանային դպրոց՝ հաստատ որոշելով իր կյանքը նվիրաբերել հայրենիքի պաշտպանությանը:

Աննկատելի անցան ուսման տարիները. Չեռնյախովսկին դպրոցն ավարտեց առաջին կարգի դիպլոմով. դպրոցի կոմիսար Գանժեն հետևյալ բնութագիրն է տվել նրան. «Ընդհանուր քաղաքական զարգացումը լավ է: Աշխատասեր է ու բարեխիղճ: Կարգապահ է, հաստատակամ: Մասնակցում է հասարակական-քաղաքական աշխատանքներին»:

Չեռնյախովսկին նշանակվեց Վիննիցայում գտնվող 17-րդ կորպուսային հրետանային գնդի վարժական դասակի հրամանատար, ուր մեկնեց կնոջ հետ: Դեռ այն ժամանակ պաշտոնակից շատ ընկերներ նկատում էին կուսակցական աշ-

* Ա. Շարիպով, Չեռնյախովսկի, «Հայաստան» հրատ., 1973:

## ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ

# «ԵՐԲ ԻՄ ԳՅՈՒՂԵՐՈՒՄ ԽԱՂԱՂ Է, ՍՐՏԻՍ ՄԵՋ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ Է»

ԼԵՎՈՆ ԱՆԱՆՅԱՆ

ՆՐԱ ՄԱՍԻՆ ԳՐՔԵՐ ԳՐՎԵՑԻՆ, ֆիլմ ստեղծվեց: Նրա հուշարձանը վեհորեն խոյացավ հայրենի Կողբում: Նա բժիշկ էր կոչումով, էությամբ, արյամբ և մինչև վերջին կաթիլը ըմբոշխնեց իր մասնագիտության բոլոր դառնություններն ու քաղցրությունները: Ավելին՝ նա գյուղական բժիշկ էր, գյուղի հոգսին ու հրճվանքին հասու, ցավին ու լավին մերված մարդ: Այդ մարդը Նիկոլայ Նասիբյանն էր, որի անձնական օրինակը բարձրացրեց բժշկի հեղինակությունը ոչ միայն Նոյեմբերյանում, այլև ողջ հանրապետությունում:

Նա մեր ժամանակի հերոսն էր. ինքը վատառողջ, անտեսելով ցուրտը, տեղատարափը, լեռնային դժվարանց տեղանքը, մեկնեց՝ սեփական կյանքի գնով փրկելու հիվանդին: Նրա ամեն մի օրը պայքար էր, բժշկի, սովետական մարդու սխրանք: Նման պարուրակի, որ սկիզբ առնելով՝ երբեք չի դառնում ելման կետը, բժիշկ Նասիբյանի գործունեության շրջանակները շարունակական ռեակցիայի ձևով ծավալվում էին՝ նոր խորքով ու լայնքով:

Յուրաքանչյուր սերունդ իր եսի պրիզմայով է բեկում նախորդների կուտակած փորձը: Այսպես հասկացավ Նիկոլայ Նասիբյանը ժառանգության հերթագայությունը՝ էստաֆետն ընդունելով Արտո Ալեքսանյանից, որը Հայաստանի առաջին գյուղական հիվանդանոցը հիմնեց Կողբում: Այժմ այդպես է վարվում բժշկի որդին՝ Մարտուն Նասիբյանը, իր ուսերին կրելով շրջանի առողջապահության գործի ծանրության կենտրոնը, յուրովի կենդանի պահելով հոր ոգին ու անունը:

Ահա այս խոհերն են պաշարել ինձ Երևան—Շամշադին երթուղում: Ակնարկիս հերոսի ընտրության կողմնորոշիչը կոնկրետ գրաղմունքն է. գրել հեռավոր վայրում ապրող ու աշխատող մտավորականի մասին, գյուղական բժշկի մասին: Նրան ես գիտեմ հոգեկան ստույգ ու անշփոթելի կերտվածքով, բնավորությամբ, իր խոհ-ձգտումներով:

...Ձյուն է, տաք, ըղձալի ձյուն: Ճամփեզրի ծառերը, ասես, հսկա մոմեր են՝ ձուլված ձյունե հաստ մոմակալին: Ճերմակ աստղածաղիկներ են մաղվում մեր ավտոբուսին: Դրսի սառնությունն ավելի է տաքացնում զրույցը. լավ զրուցակիցը կարճում է ճանապարհը: Ուղևորները խոսում են մտերմիկ անմիջականությամբ, իրենց հյութեղ բարբառով: Հրաչիկ Գրիգորյանը, որ շուտով կավարտի պոլիտեխնիկական ինստիտուտի կիբեռնետիկայի ֆակուլտետը, կրքոտ եռանդով ներբողում է իր ծննդավայրը: Նա անխտիր գովում է ամեն ինչ՝ բնությունը, մարդկանց, տեղի հնությունները, նույնիսկ... «Բերդ» գինին: Հարևաններս հաստատական շարժում են գլուխները, լրացնում, ճշգրտում. ախր դա մի փոքրիկ Շվեյցարիա է, ափսո՛ս, որ ձմռանն եք գալիս:

— Իսկ բժիշկնե՞ր,— հարցնում եմ:

— Շամշադինը հայտնի է իր բժիշկներով,— հպարտություն կա նրանց խոսքերում:

— Ա՛յ, Շոլյան Մարտունը,— ասում է մովսեսգյուղցի ծերունին:

Այգեձորից մի կին ավելացնում է՝ Սուրեն Խալաթյանը:

Դրդիից մեկ ուրիշի անունն են տալիս. չեմ հասցնում մտապահել, երբ հանկարծ.

— Շահրիկյան Գոհա՛րը, մեր Գոհա՛րը,— լսվում է ավտոբուսի այս ու այն անկյունից:

Հենց այն Շահրիկյանը, ում մասին ինձ պատմեցին հանրապետության առողջապահության մինիստրությունում՝ խորհուրդ տալով մեկնել Պառավաքար:

**ԲԱՐՁՐԻՑ ՀՈՎԻՏԸ ԶԱԳԱՐԻ Է ՆՄԱՆ:** Բժըշկական տեղամասը թառել է դարավանդին՝ ասես վերից հսկելու հովտաբնակների առողջությանը: Նրա սպասարկման շրջագիծն ընդգրկում է երեք գյուղ՝ Ծաղկավան, Հախում, Պառավաքար—մոտ 5.000 բնակիչ: Տեղամասը բընակչության բժշկա-սանիտարական օգնությունը կազմակերպում է տերիտորիալ-տեղամասային սկզբունքով: Աշխատանքի հիմքում ընկած է բուժական և սանիտարա-կանխարգելիչ միջոցառումների անցկացումն այն հաշվով, որ մարդիկ և միջավայրը լինեն առողջ, նվազագույնի հասցվեն ու վերացվեն սոմատիկ ու վարակիչ հիվանդությունները, իջեցվի մահացության տոկոսը: Մի խոսքով, այստեղ արվում է այն, ինչ կոչվում է «ընթացիկ վիրաբուժություն»:

Այս ամենը Գոհար Շահրիկյանն ինձ պատմեց, երբ ավարտվեց իր գլխավորած տեղամասի հերթական թռուցիկ ժողովը: Պատին փակցրված էր բուժքույրերի բակային համայցերի ցուցակը: Նրանք պատասխանատու են իրենց թաղամասերի (իսկ այդպիսիք 9-ն են) սանիտարական վիճակի համար:

«Երեկ ոչ մի կանչ չի եղել». զեկուցում են բուժքույրեր Գոհար Եղիկյանը, Մարո Թումանյանը, Ամալյա Բրուտյանը, մանկաբարձուհի Սաթիկ Չոբանյանը, մյուսները: Սակայն դա չի նշանակում, թե անելիք չկա: Պետք է զգոն լինել:

Շրջում ենք տեղամասում: Ամենուր աչքի է զարնում մաքրակենցաղ ու հոգատար ձեռքի առկայությունը: Այստեղ բժշկական գրականությունն է: Զանազան գրքույկների կողքին տեղ են գտել կենտրոնական ու հանրապետական մասնագիտական ամսագրեր ու թերթեր: Այս բյուլետենը կազմվել է հատկապես բուժքույրերի համար, որպեսզի հույժ անհրաժեշտության դեպքերում կարողանան հիվանդին ցույց տալ առաջին օգնություն: Ի դեպ, միջին բուժանձնակազմի գիտելիքների հարստացմանը շատ է նպաստում քույրական խորհուրդը, որտեղ տարբեր թեմաներով զեկուցումներ են կարդում հենց իրենք՝ ունկնդիրները: Ահա և կլինիկական ախտորոշիչ լաբորատորիան, սա էլ կաթնախոհանոցն է՝ մինչև մեկ տարեկան երեխաների համար: «Մեռյալ գույք» չեն սրանք, այլ դպրոցներում, մսուր-մանկապարտեզներում, աշխատավորության շրջանում բժշկագիտության նորույթները մասսայականացնելու լավագույն միջոցներ:

Բժշկուհին հաճախ է դասախոսություններ կարդում գյուղի աշխատավորության համար: Թվարկում են մի քանի թեմաներ՝ աղմուկի վընասակար ազդեցությունն օրգանիզմի վրա և դրա վերացման ուղիները, քաղցկեղի կանխարգելման միջոցները, ալկոհոլի ազդեցությունն ու վնասները և այլն: Կարդում է ոչ միայն ակումբի շենքում, ամբիոնի մոտ, այլ հաճախ՝ բաց դաշտում, աշխատանքի ընդմիջման պահին: Համակ ուշադրությամբ են լսում նրան, քանի որ թեմաները հետաքրքրական են, ամենքին հուզող: Երբեմն էլ աշխատավորներին ծանոթացնում է միջազգային կյանքի նորույթներին, մասնագիտական հոդվածներ հրապարակում շրջանային թերթում: Շուտով լույս կտեսնի Շահրիկյանի «Հիվանդի էթիկան» հոդվածը: Սա շատ կարևոր հարց է: Սովորաբար գրում են բժշկի էթիկայի մասին, լիովին անտեսելով հիվանդի վարվեցողության կուլտուրան:

Ինձ հիացնում է հիվանդասենյակների կոկիկ, մաքուր վիճակը: Քսանհինգ մահճակալ՝ տարբեր հիվանդությունների համար, առանձին սըրահներում:

— Որքան մահճակալները շատանում են, հիվանդների թիվը պակասում է,— ժպիտով նկատում է բուժքույր Հրածին Մարդանյանը:— Իսկ տարիներ առաջ...

**ՏԱՐԻՆԵՐ ԱՌԱՋ ՄԽԻԹԱՐԱԿԱՆ ՔԻՉ ԲԱՆ ԿԱՐ:** Երբ Գոհար Շահրիկյանը Պառավաքար եկավ (դա 1957-ին էր), արդեն զգալի փորձ ուներ: Երևանի բժշկական ինստիտուտի շրջանավարտը տասը տարի անընդմեջ Սևանի շըրջբուժմիավորման գլխավոր բժիշկն էր: Կարող էր աշխատանքի տեղավորվել մայրաքաղաքում, բայց հրաժարվեց, որոշեց մեկնել հեռավոր շըրջան, նվիրվել գյուղի բնակիչների առողջապահության գործին: Այն ժամանակ Պառավաքարի տեղամասում ընդամենը տասը մահճակալ կար: Ցածր էր մարդկանց սանիտարական կուլտուրան: Անհրաժեշտ էր լայն ագիտացիա ծավալել, բացատրել, համոզել... Թեև երիտասարդ՝ Շահրիկյանը գիտակցում էր, որ գյուղական բըժիշկն ամենից առաջ բարի խորհրդատու է, հիվանդին կարեկից ու սփոփող մարդ:

Նրա կենսագրությունը գրեթե համարժեք է իր աշխատանքային տարեգրությանը: Եվ այժմ, երբ ի մի է բերում տարիների իր վաստակը, նրա խոսքերում և՛ հպարտություն կա, և՛ ներքին ցավ: Ցավ այն վիճակի համար, որին ինքը հարկադրված էր բախվել, և արժանի հպարտություն հաղթանակի համար: Իսկ եթե վերլուծելու լինենք այդ հաղթանակ ասվածը, ապա պետք է ավելացնենք, որ տեղամասում լիովին վերացել են մաշկային պարազիտները, այլևս չեն հանդիպում բրուցելյոզի, տուբերկուլյոզի, մանկական պոլիոմիելիտի, դիֆտերիայի, փայտացման, որովայնային տիֆի դեպքեր, հատկապես բչացել է աղիքային վարակիչ հիվան-

դությունների խումբը: Կյանքն ինքնին պայքար է, խորհրդածում է բժշկուհին, կարևորը ճիշտ պայքարելն է: Շահրիկյանը գտավ պայքարի խելամիտ ուղին, թեև հարկ եղավ այնքա՜ն ուժ ու եռանդ վատնել: Ասենք, դա էլ անհրաժեշտ մի փուլ էր, դժվարին ու աշխատատար շրջան: Առածը վկայում է՝ գայլից վախենում ես, անտառ մի գնա: Ինքը կիսատ չթողեց սկսածը... Բայց արժե՞, արդյոք, քամուն տալ հին դարմանը:

Իսկ ես գիտեմ, մի ամբողջ կյանք է արժեցել «ցորենն ու հին հարդը իրարից ջոկելու» այդ երկար տառապանքը: Այլ կերպ չէր էլ լինի, եթե հմուտ ես գործիդ մեջ և սիրում ես այն:

Առաջին հայացքից Շահրիկյանի արածն առօրեական ու մանր է թվում: Ո՛չ հազվագյուտ վիրահատություններ, ո՛չ աղմկոտ նորույթներ: Սակայն փոքրն ու մեծն ապրում են կողք-կողքի, և հեշտ չի տրվում մեծը մանրով իմաստավորելու կարողությունը: Կյանքն օրըստօրե նորանոր խնդիրներ էր առաջադրում. չպետք է հուսախաբ անել գյուղացիներին: Դժվարությամբ, բայց հաղթահարվեց հոգեբանական գործոնը: Զարմանալի մարդիկ են այս շամշադինցիները. մանավանդ բերքահավաքի սեզոնում, որպես կանոն, մոռանում են ամենակարևորը՝ առողջությունը, անտեսում հիվանդության առաջին ախտանշանները: Իսկ ո՞վ պետք է հոգա նրանց մասին, եթե ոչ բժիշկը: Այսպես ծնվեց ֆերմաներում, դաշտերում, այգիներում աշխատավորների բուժքննությունը կազմակերպելու նախաձեռնությունը: Եվ էլի շատերը:

Այժմ... Ահա այդ ԱՅԺՄՆ էլ զվարթացնում է բժշկուհուն: Ավելի լավ է առաջ նայել. և՛ քայլելն է հեշտ, և՛ հեռանկարն է տեսանելի: Այժմ իրենք են առաջարկում ձեռք առնել կանխարգելիչ միջոցները, իրենք են հիշեցնում.

— Երեխայի պատվաստման ժամանակն է, ե՞րբ բերեմ...

Պատկերը հիմնովին փոխվել է: Վարակիչ հիվանդությունները դարձել են սակավադեպ: Ընդհանրապես իջել է հիվանդությունների կորը: Համերաշխ ու միաձույլ կոլեկտիվի նվաճումներից են բուժ-կանխարգելիչ ծառայության բարձր մակարդակը, մոր և մանկան պահպանության գործի լավ դրվածքը: Իբրև առաջավոր մեթոդ կիրառվում է հիվանդների դիսպանսերացումը. անցյալ տարի բժշկական քննության ենթարկվեցին հարյուրավոր բանվոր-ծառայողներ ու աշակերտներ: Հիվանդներին նշանակվեց ստացիոնար, ամբուլատոր, կանխարգելիչ և սանատորական բուժում: Ավելի հեշտ է կանխել հիվանդությունը, քան բուժել:

— Երբ բժշկուհին ինքնակամ գյուղ եկավ, մտածում էինք՝ սա էլ չի դիմանա, կձանձրանա, կգնա... Բայց մնաց,— ասաց մեկը:

— Մնացի, մերվեցի: Ծանր է, գիտե՞ք, կտրվել ծննդավայրից,— խորհրդածում է բժշկուհին,— մանավանդ, եթե այն Երևանն է: Երբեմն վհատվում եմ, մտածում՝ քո ի՞նչ գործն էր, թողնել հարազատներիդ, տունդ, բարձրանալ այս հեռու լեռները (ճանապարհի մերկասառույցը տեսաք, չէ՞): Բայց երբ քաղաք եմ մեկնում՝ սկըսում եմ կարոտել ոչ միայն ընտանիքս, այլև տեղի մարդկանց, որոնք, քչախոս լինելով, շատ բան են ասում մի հայացքով, մի հատիկ բառով, մի ձեռքսեղմումով:

— Եթե արվեստի սերն էլ չլիներ, երևի քաղաքն ավելի քիչ հիշեինք: Հարկավոր է շրջանում լավ հիմքերի վրա դնել արվեստի պրոպագանդումը,— զրույցին խառնվում է երիտասարդ ստոմատոլոգ Վոլոդյա Հարությունյանը:

Արվեստի սերը... Ժամանակին Շահրիկյանին նա թվում էր, որ եթե ինքը ներկա չլինի, համերգը կամ ներկայացումը չեն սկսվի: Հիմա թերթերում կարդում է՝ վաղը բեմադրվում է «Եկեք անկեղծ խոսենք» կատակերգությունը, օպերային թատրոնում Լիլիան Կոզիի հյուրախաղերն են, Հայֆիլհարմոնիայի փոքր դահլիճում ասմունքի երեկո է... Դե՛, արի ու հեռակա հիացիր:

— Սակայն փաստ է,— ասում է բժշկուհին,— մարդու ալյաքինման համար պետք է շատ ավելին զոհել:

Արդեն հիվանդանոցի պատշգամբում նա ավելացնում է.

— Շամշադին, նշանակում է արևի երկիր: Արևը, ճիշտ է, չի փոխվում, բայց երկիրն օր-օրի վերափոխվում է: Առանց պուլսոմետրի էլ զգում ես նրա զարկերակը՝ խիստ համաչափ բաբախյունով:

Երկհարկանի տուֆակերտ առանձնատները նրա ասածի պերճախոս հաստատումն են: Նա՝ գյուղական սովետի դեպուտատը, հպարտությամբ է խոսում վերջին շրջանի փոփոխությունների մասին: Ծաղկավանում օրերս շահագործման են հանձնվել նոր դպրոցն ու մարզասրահը, մշակույթի հոյակապ պալատը, Պառավաքարում ուսումնական նոր մասնաշենքի շնորհիվ պարապմունքները մեկհերթ են, իսկ մսուրմանկապարտեզը 105 մահճակալ ունի, Հախումում սկսել են նոր դպրոցի շինարարությունը:

Ամիսներ առաջ գյուղում լուծվեց խմելու և կենցաղային ջրի հարցը. գրեթե բոլոր բակերում ծորակներ տեղադրվեցին: Շահրիկյանի ակտիվ միջամտությամբ մաքրեցին աղբյուրների ակունքները, խողովակներ անցկացրին, ջըրավազան կառուցեցին... Թաղամասերից մեկում ջուր չկար: Բնակիչները ճանապարհին կանգնեցնում էին նրան՝ բժշկուհի ջան, բա ո՞նց կլինի, մի բան արեք...

Շահրիկյանը կրկին դիմեց տնտեսության ղեկավարներին, ապացուցեց, համոզեց:Իսկ եթե բժշկուհին է ասում, ուրեմն՝ պետք է անել: Այսպես նաև նրա աջակցությամբ լուծվեց ֆերմաներում կացարանների կառուցման հարցը, գյուղերի փողոցները բարեկարգվեցին, անցկացվեց ցերեկային լուսավորություն:

— Իսկ էն շենքը կնոջս հանրակացարանն է,— ասում է ամուսինը՝ Ասլան Մանուչարյանը—Պառավաքարի միջնակարգ դպրոցի պատմության ուսուցիչը:— Հախումում մեր երկհարկանի տունը թողած, սենյակ է վարձել այստեղ և գիշեր-ցերեկ տարված է իր գործով:— Նրա խոսքերում ես կարդում եմ սքողված վիրավորանք:

— Իսկ ինչպե՞ս անել,— առարկում է բըժըշկուհին,— երբեմն դժբախտ դեպքեր են պատահում: Պետք է հիվանդանոցին մոտ լինել: Ա՛յ, օրինակ, վերջերս տասնամյա Արգամը ծառից ընկել էր: Բերեցին գիտակցությունը կորցրած, ուղեղի երկրորդ աստիճանի ցնցումով:

Դեռ լավ է, որ ինքը մոտերքում էր: Նա ոչինչ չի ավելացնում, բայց ես, որ ծանոթ եմ տեղամասի ստացիոնար հիվանդների մատյանին, տասնյակ նման դեպքեր եմ վերհիշում: Քանի՜-քանի անգամ է նա առաջին օգնություն ցույց տվել հիվանդներին, ժամանակին կանխել հետագա բարդությունները:

— Է՜,— միջամտում է բուժքույրերից մեկը,— ձախորդ մարդը, որ ուղտի վրա էլ լինի, կարիճը կկծի...— Իսկ եթե բժշկուհին կողքիդ է, վախենալու առիթ չկա:

Շահրիկյանն աշխատում է քիչ հիվանդներ ուղարկել շրջկենտրոն, և եթե գործուղում էլ է, նրա ախտորոշումը հազվադեպ է ժխտվում:

***

— Ձեր կյանքի ամենահիշարժան դեպքը, բըժըշկուհի՛:

— Դրանք երկուսն են. 1954 թվականին, երբ կոմունիստ դարձա, և 1967-ին, երբ ինձ շնորհվեց վաստակավոր բժշկի կոչում,— պատասխանում է մարդուն բոլորանվեր ծառայող Շահրիկյանը:

— Ե՞րբ եք ապրել մեծ երջանկության զգացումը:

— Դա երջանիկ օրերի մի ամբողջական շըղթա է, որի ամեն մի օղակը կապված է հրաշալի հիշողությունների հետ: Սակայն ուզում եմ առանձնացնել այն օրը, երբ ինձ հանձնվեց բժշկի դիպլոմը: Ընդհանրապես երեխաներիս՝ Հրաչիկի և Նարինեի ներկայությամբ միշտ էլ երջանիկ եմ զգում:

— Բժշկի ձեր իդեալը...

— Ս. Պ. Բոտկինը, Վ. Պ. Օբրազցովը: Հայ թերապևտներից՝ Լ. Ա. Հովհաննիսյանը, Ա. Ա. Մելիք-Ադամյանը: Նրանց անձնական օրինակին շատ բանով եմ պարտական. սովորեցի ճիշտ քայլել կյանքում, տեսնել ու զգալ մասնագիտությանս առերևույթ աննկատ գեղեցկությունները:

— Ինչո՞ւ հենց բժշկությունն ընտրեցիք:

— Մանկուց ինձ հետաքրքրում էր մարդու օրգանիզմը: Գիտեի, որ այդ ոչ մեծ զանգվածում դեռևս բազում անհայտներով հավասարումներ են թաքնված, չարի և բարու հակամարտությունը: Իսկ ես սիրում եմ պայքարել:

— Ինչպիսի՞ն պետք է լինի իսկական բժիշկը:

— Ինչ էլ ասելու լինեմ, պետք է կրկնեմ սովետահայ նշանավոր կլինիցիստ, պրոֆեսոր Մելիք-Ադամյանին. «Հիվանդին մոտենալիս, նրա հետ զրուցելիս և նրան քննելիս այնպես պետք է անել, որ նա առաջին հերթին զգա ձեր հոգատարությունն ու մարդասիրությունը, իսկ հետո միայն՝ գիտելիքները. հակառակ դեպքում հիվանդին չեն օգնի ո՛չ ձեր դուրս գրած դեղորայքը և ո՛չ էլ հուսադրող խոսքերը»: Սա անառարկելի ճշմարտություն է:

— Դուք հարմարվել եք գյուղին: Իսկ ինչո՞ւ են մեր նորավարտ բժիշկները խուսափում նշանակված վայրում աշխատելուց:

— Վերջերս Երևանում «Ժիզելն» էի դիտում: Ներկայացումից հետո բարեկամներիցս մեկը հարցրեց՝ ես զարմանում եմ՝ ինչպե՞ս եք կարողանում մնալ քաղաքից դուրս: Մի պահ շըփոթվեցի. մի՞թե այդքան վատ է գյուղում: Հետո հասկացա, որ այդ անհիմաստ հարցի ակունքը ժամանակակից գյուղը լավ չճանաչելն է: Սա էլ համարում եմ նորավարտների խուսափողական վերաբերմունքի պատճառը: Այս տարի ծաղկավանցի մի աղջիկ ավարտեց բժշկականը: Ուրախացած շնորհավորեցի և ասացի, որ սպասում ենք իրեն, իսկ նա պատասխանեց. «Ի՜նչ եք ասում, ես գյուղ միայն ամառանոց կգամ»: Այսպես էլ է պատահում: Նման մտայնությամբ մասնագետ ո՛չ գյուղին է հարկավոր, ո՛չ էլ քաղաքին:

— Ո՞րն եք համարում ձեր ամենատխուր օրը:

— Հիշում եմ իմ ուսանողական պրակտիկան կլինիկայում: Մի քանի շաբաթ չէի կարողանում ուշքի գալ, երբ ականատես եղա, թե ինչպես բժշկությունն անզոր էր փրկելու մարդուն...

— Դուք կկրկնեի՞ք Նիկոլայ Նասիբյանի սըխրանքը:

— Գյուղական բժիշկ Նասիբյանի արարքը յուրօրինակ անձնազոհություն էր: Այդպիսին պետք է լինի ամեն մի իսկական բժիշկ:

— Ի՞նչն է ձեզ ուրախացնում:

— Մեր օրերում կնոջ սոցիալական վիճակը: Նա սոսկ իր ընտանիքի սալին գամված կցորդ չէ: Այժմ որևէ կարևոր իրադարձություն առանց կնոջ մասնակցության՝ կիսով չափ է վավերա-

կան: Բնավ պատահական չէ, որ 1975 թվականը ողջ մոլորակում նշվում է որպես կանանց տարի:

— Ինչպե՞ս եք պատկերացնում մեր առողջապահության գալիքը:

— Առողջապահության հետագա ծաղկումը, անտարակույս, կապված է գիտատեխնիկական առաջընթացի արագացման, գիտության ու պրակտիկայի սերտացման հետ:

***

ՁՄԵՌՆ ԻՐ ԱՆՈՒՇ ՀՄԱՅՔՆԵՐՆ է ցուցադրում, և մենք խմբված զրուցում ենք:

— Երբ իմ գյուղերում խաղաղ է,— ասում է բժշկուհին,— սրտիս մեջ խաղաղություն է:—Եվ ապա՝

— Հիշո՞ւմ եք Եսենինին.

Ձմռան ձյունն այնտեղ խղճի պես մաքուր է,
Եվ ուրախ մանում է ճախարակը բքի...

— Ճերմակը խաղաղության գույնն է. զուր չէ, որ աղավնիներն են խորհրդանշում այն: Բժշկի խալաթն էլ սպիտակ է և ոչ մի բիծ չի հանդուրժում: Իսկ այդ դժվար, այդ քաղցր, ճերմակ խաղաղության ամրապնդմանը յուրաքանչյուրս յուրովի ենք մասնակցում...

Լուռ նայում եմ նրան: Այն բազմախոս լռությամբ, որով տեղացիներն են վարձատրում նրա ջանքերը: Ուզում եմ, որ իմ շնորհակալությունը նա կարդա հայացքիս մեջ: Երախտագիտություն այն բանի համար, որ Գոհար Շահրիկյանը չի ծնվել միայն կյանքի գեղեցկությունները վայելելու, այլ փորձում է գեղեցկացնել կյանքը:

— Պատմեցե՛ք ձեր խմբագրությունում,— ասում է բուժքույրերից մեկը,— որ մեզ մոտ էլ անձնվեր մարդիկ կան, որ մենք չենք ուզում աչքի, սրտի և հեռավորության մասին ասացվածքը իրական հող գտնի:

ՀԿԿ Շամշադինի շրջկոմի կազմբաժնի հրահանգիչ Սերոբ Եղիկյանը խնդրում է իր բանավոր տեղեկանքը ևս նկատի ունենալ: Ահա թե ինչ տեսք ունի այն. «Պառավաքարի սովխոզային սկզբնական կազմակերպության անդամ, բանվոր-ծառայողների կուսակցական խմբի կազմակերպիչ Գոհար Շահրիկյանը շրջկոմի հուսալի հենարանն է գյուղում: Մենք հաճախ ենք նրան ներգրավում տարբեր ստուգայցերի մեջ՝ բյուրոյի հարց նախապատրաստելու համար: Սեղմ ասած, ակտիվ ու ազնիվ է իբրև կոմունիստ, օրինակելի՝ իբրև բժիշկ»:

...Ձյուն է: Տաք, ըղձալի ձյուն: Ետդարձին ավտոբուսից նույն ծառերն են երևում, որոնք մոմերի նման պլպլում են ցրտի մեջ, նույն փետրավոր ամպերը, բայց ես մենություն եմ զգում: Այսպիսին է իմ մասնագիտությունը: Լրագրողինը: Հանդիպում, բաժանում, նորից հանդիպում... Կարծեմ Հյուգոն է ամեն մի մարդու մեջ տեսել համաշխարհային պատմությունը: Ու վերստին ականջիս են հասնում ակնարկիս հերոսի բառերը. «Երբ իմ գյուղերում խաղաղ է, սրտիս մեջ խաղաղություն է»: Ես հրաժեշտի պահին սրտանց մաղթում եմ նրան.

— Թող հարատև ու անամպ լինի քո սրտի խաղաղությունը, բժշկուհի՛ Գոհար Շահրիկյան:

ՈՒՂՂՈՒՄ

Ամսագրի այս համարի 26-րդ էջում վերնագրից հետո կարդալ՝ Ռ. Լ. Մովսիսյան, պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ:



Адрес редакции: 375033, Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

ՎՖ 06016 Պատվեր 317 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ՝ 14.400 Գինը 20 կ.:

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 20/III—1975 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանջյան փող. № 28:

# ՁԵԶ ՀԱՄԱՐ, ԸՆԹԵՐՑՈՂՆԵ՛Ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Դ. Ի. ՈՒԼՅԱՆՈՎ—Տարբեր տարիների ակնարկներ: *Հուշեր: Նամակներ: Հոդվածներ. Մ.*, Политиздат, *1974:*

*Վ. Ի. Լենինի եղբոր, զինակցի հուշերն են սոցիալիստական առաջին երկրի հիմնադրի, Ուլյանովների ընտանիքի անդամների մասին: Գրքում զետեղված են առաջին անգամ հրապարակվող նամակներ և այլ նյութեր:*

Մ. ԳՈՐԿԻ—Վ. Ի. Լենին. *Մ.*, Политиздат, *1974:*

Գեորգի Դիմիտրովը—ականավոր հեղափոխական լենինյան. *Մ.*, Политиздат, *1974:*

*Գրքում զետեղված են ՍՄԿԿ ԿԿ քաղբյուրոյի անդամության թեկնածու Պ. Ն. Դեմիչևի, ակադեմիկոս Պ. Ն. Ֆեդոսեևի, Բուլղարիայի ԳԱ ակադեմիկոս Թ. Պավլովի, ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամներ Մ. Իովչուկի, Դ. Մարկովի և սովետական ու բուլղարական այլ գիտնականների ելույթներն ու զեկուցումները:*

*Հիմնականում արխիվային նոր տվյալների միջոցով բացահայտվում է Գ. Դիմիտրովի դերը՝ որպես բուլղարական և միջազգային կոմունիստական շարժման ականավոր գործչի:*

Ա. Գ. ԴԱՎԹՅԱՆ—Սոցիալիզմի հաղթական սխտեմը և նրա բուրժուական «հննադատների» հնհադատություններ. *Ե., «Գիտելիք» հրատ., 1974:*

Խ. Հ. ԲԱՐՍԵՂՅԱՆ—Մարքսիզմի ծրագրային առաջին փաստաթուղթը: *Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Կոմունիստական կուսակցության մանիֆեստի» հայերեն առաջին հրատարակության 70-ամյակի առթիվ: Ե., «Գիտելիք» հրատ., 1974:*

Ա. Խ. ԹԱՄԱՋՅԱՆ—Օբյեկտիվը և սուբյեկտիվը հեղափոխության պրոցեսում. *«Հայաստան» հրատ., 1974:*

ՀՐ. Խ. ԴԱՐԲԻՆՅԱՆ—Վ. Ի. Լենինը և բոլշևիկների պայքարը կոմունիստական ինտերնացիոնալի ստեղծման համար (1917—1919 թթ.). *«Հայաստան» հրատ., 1974:*

Ս. Ա. ՔՈՉԱՐՅԱՆ—Սոցիալիզմ և խաղաղություն. *«Հայաստան» հրատ., 1974:*

ՅԱ. Ի. ԽԱՉԻԿՅԱՆ, Գ. Վ. ՀԱԿՈԲՅԱՆ, ՍՏ. Է. ԹՈՓՉՅԱՆ—Հայ էսթետիկական մտքի պատմությունից (XIX դարի վերջ, XX դարի սկիզբ): *Գիրք 1-ին, Ե., ԳԱ հրատ., 1974:*

Տեսական սեմինարներ մարքսիստական-լենինյան տեսության արդիական հարցերի շուրջ: *Կոմերիտական քաղաքական ուսուցման սիստեմ: Ուսուցման օրինակելի ծրագրեր. Մ.*, «Молодая гвардия» *հրատ., 1974:*

Ա. Մ. ԱՐՇԱՐՈՒՆԻ—Մարդիկ ու տարիներ. *Հուշանովելներ. «Հայաստան» հրատ., 1974:*

Ռ. Ս. ՀԱՄԲԱՐՅԱՆ—Գեներալի երրորդ ասողը. *«Հայաստան» հրատ., 1974:*

Է. Ն. ՋՈՀՐԱԲՅԱՆ—Որոտանի որդիները. *«Հայաստան» հրատ., 1974:*

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԽՈՐԴԵՆԻՆ ՏԱՆԻԴՆԵՐԻ ԱՂԲՅՈՒՐ

*Կաշվե-կոշկեղենի արդյունաբերության զարգացմանը զուգընթաց աճում է դաբաղիչ, այդ թվում բուսական ծագում ունեցող նյութերի, պահանջարկը։*

*Ուզբեկական ՍՍՀ ԳԱ բուսաբանության ինստիտուտում հայտնաբերել են մի բույս, որը կարող է այդպիսի նյութերի համար լավագույն հումք հանդիսանալ։ Միջին Ասիայում աճող բազմամյա, ուղղաձիգ խորդենին է այդ, որի արմատներն ու տերևները պարունակում են մինչև 21 տոկոս դաբաղիչ նյութեր՝ տանիդներ։ Փորձերը հաստատել են խորդենու տանիդների արդյունաբերական մշակման բարձրարդյունավետությունը։ Բացի այդ, տանիդների բաղադրությունն այնպիսին է, որ դրանք կարող են կիրառվել նաև բժշկության մեջ։*

## ՀԵՂՈՒԿ ԱՍՊԻՐԻՆ

*Ի՞նչ հիվանդություններ ասեք, որ չի բուժում ասպիրինը՝ սովորական մրսածություն, ռևմատիզմ, սրտային հիվանդություններ... Բայց ասպիրինը հակացուցվում է ստամոքսի խոցով հիվանդներին։ Ընկնելով հիվանդի ստամոքսը, ասպիրինը տարրալուծվում է և բաղադրիչներից մեկը՝ սալիցիլաթթուն, գրգռիչ ազդեցություն է գործում ու կարող է առաջացնել նույնիսկ ստամոքսային արյունահոսություն։*

*Ամերիկյան դեղագործ, պրոֆեսոր Ս. Ու. Վիտվորդն առաջարկել է գործածել հեղուկ ասպիրին։ Ասպիրինը լուծում են պրեպարատի քայքայումն արգելակող նյութերի մեջ. այդ օգնում է թուլացնելու կամ բոլորովին խուսափելու անցանկալի երևույթներից։ Որպեսզի երեխաները չըհրաժարվեն հեղուկ ասպիրինից, կարելի է դրան ավելացնել նարնջի կամ անանուխի համ։*

## ԽՈՂՈՎԱԿՆԵՐԻ ՆՈՐՈԳՄԱՆ ՆՈՐ ՄԵԹՈԴ

*ԳԴՀ-ի ինժեներները մշակել են ջրատար խողովակների նորոգման դյուրին եղանակ. հարկ չի լինում քանդելու ամբողջ սիստեմը։ Նորոգման ժամկետը կրճատվում է երկու անգամ։*

*Խողովակ է մտցվում պլաստմասսայե փողրակ, դրանով բարձր ճնշման տակ մղվում է տաք ջուր, որը պոլիմերն ամուր սեղմում է մետաղին։ Պլաստմասսայե ներքին երեսպատման միջոցով հին խողովակների ծառայության ժամկետը կարելի է երկարացնել 50 տարով։*

## ՄԱԳՆԻՍԸ ԲՈՒԺԻՉ

*Երամյա փորձարկումներից հետո վիրաբույժ Վոլֆգանգ Մյուլբաուէրը (ԳՖՀ) մշակել է դժվարածածկ վերքերի՝ հետօպերացիոն կարերի, այրվածքների, մաշկավերքերի բուժման հուսալի եղանակ։ Այդ տեղերը ենթարկվում են մագնիսական դաշտի ազդեցության։ Մագնիսային սարքով բուժված հետօպերացիոն կարը շատ շուտ է սպիանում։ Տասն օր անց սովորական աչքով իսկ նկատվում է, որ վերքը փակվել, լավացել է։ Այս դեպքում սովորական վիրահատական թելեր չեն օգտագործվում։*

*Մագնիսը ոչ միայն արագ վերականգնում է հյուսվածքները, այլև նվազեցնում ցավի զգացումը, կանխում այտուցներն ու բորբոքումները։*